


(Ֆանտաստիկ պատմվածք)

Մաք Կրայգ-ավագը նայեց անկոչ հյուրին ու հարցրեց.

— Դո՞ւք որտեղից հայտնվեցիք:

Երիտասարդը թոթվեց ուսերը:

— Ձեր... մարդիկ քարի նման անզգա են, իսկ եթե ես ունենայի այնքան գումար, որ բավարար լիներ նրանց կաշառելու համար, ապա ձեզ չէի դիմի: Ես ներս մտա պատուհանից:

Մաք Կրայգը ծիծաղեց:

— Պատուհանի՞ց: Սենյակը գտնվում է ալյումինե պատերով, ամբողջովին ապակեպատ երկնաքերի տասներկուերորդ հարկում, և դուք մտաք պատուհանի՞ց:

Այն, որ ինչ-որ մեկը կարող է անցնել կոնցեռնի հսկողությունն իրականացնող գործակալների շղթայից, նրան թվում էր նույնքան անհավանական, որքան և պատուհանից սենյակ մտնելը: Բայց երիտասարդը կանգնած էր նրա առջև: Իսկ քանի որ Մաք Կրայգը չէր հավատում գերբնական ուժերին, ուստի առեղծվածը պարզելու համար պատրաստ էր նույնիսկ ձեռք քաշել որոշ գումարից:

— Ինչպե՞ս ընկաք այստեղ: Մտահղացումը գնահատում եմ հարյուր դոլար: Հարողդ...

Հարևան սենյակի դռների մեջ երևաց Մաք Կրայգ-կրտսերը:

— Գրիր հարյուր դոլարի չեկ:

— Պետք չէ: Ինձ համար բավական կլինի և այն, որ լսեք ինձ,— երիտասարդը առանց հրավերի նստեց բազկաթոռին և ձեռքի ունած թղթապանակը դրեց ծնկներին:

— Դուք չէիք պատասխանում իմ նամակներին և հեռախոսային զանգերին...— սկսեց նա:

— Դա, հավանաբար, գործին չի առնչվում,— ընդմիջեց Մաք Կրայգ-ավագը:

— Պատկերացրեք, որ առնչվում է,— հանգիստ առարկեց երիտասարդը:— Ես ցանկանում եմ անձամբ առաջարկել ձեզ իմ գյուտը, որը կարող է կարևոր դեր խաղալ քաղաքակրթության զարգացման համար:

— Լավ: Ի՞նչ գյուտ է:

— Հաբեր... անտիգրավիտացիոն հաբեր,— ասաց երիտասարդը:— Այդպիսի հաբ ընդունած մարդն այլևս չի ենթարկվում երկրի ձգողականության ուժին, բավական է մի թեթև հրում, որպեսզի նա հայտնվի գետնից զգալի բարձրության վրա: Մարզանքի մի տեսակ՝ ջումպինգ է կոչվում: Նրա էությունը հետևյալն է՝ գազով լցված փուչիկի օգնությամբ մարզիկն աշխատում է պահպանել մարմնի հավասարակշռությունը, այդ փուչիկով ազատորեն կարելի է շարժվել օդում: Ահա, ուրեմն, իմ միայն մեկ հաբը առանց որևէ գլխացավանքի, ձեր առջև բաց կանի անհամեմատ ավելի մեծ հնարավորություններ:

Նա մի րոպե լռեց, իսկ Մայք Կրայգ-կրտսերը, որ մինչ այդ լուռ լսում էր, հարցրեց.

— Չեմ հասկանում... դուք ուզում եք, որ մարզիկները հաբե՞ր կուլ տան:

Երիտասարդը վիրավորվեց:

— Իմ հաբերն ունեն հսկայական գործնական նշանակություն: Տարածության մեջ առանց ապարատների օգնության տեղաշարժվելը կլուծի տրանսպորտային պրոբլեմները, դժվարամատչելի հանքատեղերի շահագործումը կդառնա շահավետ: Նշանակալից չափով կթեթևանա որոշ ձեռնարկությունների բանվորների հավաքագրումը, քանի որ կվերանան փոխադրման հետ կապված դժվարությունները: Ես կարող եմ ձեզ էլի հազարավոր օրինակներ բերել, բայց ևս մեկն էլ և սահմանափակվենք. հաբերն առանձնապես օգտակար կլինեն Լուսին թռչող տիեզերագնացների մարզումների համար:

— Իսկ դուք չե՞ք ասի, միստր...,— սկսեց Մաք Կրայգ-կրտսերը:

— Իմ ազգանունը Ֆորնսուորն է:

— Ես պարզապես ցանկանում եմ իմանալ, թե հաբն ընդունած մարդն ան-




Նկարը՝ ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

կըշռությամբ «հիվանդանում է», ներեցեք արտահայտության համար, ողջ կյանքո՞ւմ, թե՞ ձեր հաբերը ներգործում են միայն ժամանակավորապես:

— Ցավոք, միայն մի որոշ ժամանակ,— խոստովանեց Ֆորնսուորթը,— սակայն մասսայական արտադրության դեպքում հաբերի արժողությունն այնքան ցածր կլինի, որ մինչև իսկ նրանց մասնավոր գործածությունը կդադարի ֆինանսական պրոբլեմ լինելուց:

— Ես վախենում եմ ոչ թե դրանից,— ասաց Մաք Կրայգ-կրտսերը,— այլ անկշռության կորստի հետևանքներից: Քսան մետր բարձրության վրա հայտնըված մարդու համար անկումը անխուսափելի մահ է: Դա այնքան էլ հաջող ռեկլամ չի լինի մեր ֆիրմայի համար:

— Օ, կարող եք կատարելապես հանգիստ լինել: Անցումը անկշռության վիճակից կատարվում է աստիճանաբար: Այնպես որ՝ ստացվում է շատ սահուն ու անվտանգ վայրէջք:

—Լավ, իսկ դուք չե՞ք կարող ցուցադրել ձեր հաբերի ներգործությունը:

— Բայց չէ՞ որ ես կարողացա այստեղ ընկնել հենց այդ ձևով,— ասաց Ֆորնսուորթը:— Ես գետնից բավականին ուժեղ վեր մղվեցի, իսկ երբ հասա ձեր պատուհանին, կառչեցի շրջանակից: Բարեբախտաբար պատուհանը բաց էր, այնպես որ սենյակ մտնելն առանձնա-

պես դժվար չէր:
— Դուք արտոնագրե՞լ եք ձեր գյուտը,— հարցրեց Մաք Կրայգ-կրտսերը:
— Բանն էլ հենց այն է, որ արտոնագիր ստանալու համար փող չունեմ: Ողջ գումարը գնաց փորձերի վրա: Ես ստիպված եմ վաճառել գյուտս: Հույսով եմ, որ ձեր «Ջեներալ Օբստրաքշն» կոնցերնը, ելնելով մարդկության և ֆիրմայի շահերից…
— Միստր Ֆորնսուորն,— նորից ընդմիջեց Մաք Կրայգ-ավագը,— ես կուզենայի տեսնել, թե ինչպես են ներգործում ձեր անտիգրավիտացիոն հաբերը:
Ֆորնսուորնը շփոթվեց:
— Դժբախտաբար, դրամական դժվարությունների և փորձնական արտադրանքի համար անհրաժեշտ նյութերի բարձր գնի պատճառով ես ընդամենը երկու հաբ ստեղծեցի: Մեկն ընդունեցի ձեզ մոտ գալու համար, իսկ երկրորդը…
Նա սկսեց պրպտել գրպանները, ի վերջո հուսահատ ասաց.
— Ես հենց սրանից էլ վախենում էի՝ թողել եմ լաբորատորիայում: Բայց եթե դուք ցանկանում եք, ապա ես հիմա…
—Հարկավոր չէ,—ասաց Մաք Կրայգ-ավագը:
— Բայց ամեն ինչ այստեղ է,— Ֆորնսուորնը ձեռքի ափով շրխկացրեց թղթապանակին,— բոլոր տեսական հաշվումները և տեխնոլոգիական պրոցեսի նկարագրությունը… ճիշտ է, վերատպության համար փող չունեի, սակայն եթե ցանկանում եք ծանոթանալ… Իհարկե, արտոնագիր ստանալու համար այսքանը դեռ բավական չէ, բայց ցանկացած ժամանակ ես կարող եմ…
—Հարկավոր չէ,— Մաք Կրայգ-կրտսերը կրկնեց հոր խոսքերը: Իսկ Մաք Կրայգ-ավագը մի առանձին հետաքրքրությամբ հարցրեց.
— Որքա՞ն եք ուզում ձեր գյուտի դիմաց:
—Միլիո՞ն, կե՞ս միլիոն,— Ֆորնսուորնը հարցական նայեց նրան:— Գյուտն անհամեմատ ավելի արժե, բայց ես դժվարին կացության մեջ եմ…
— Ձեր այդ թղթապանակի համար ես կվճարեմ տասը հազար դոլար:
— Դե դուք ծիծաղում եք,— վրդովվեց գյուտարարը:
— Լսեցեք, Ֆորնսուորն, ինքներդ ասացիք, որ թղթապանակում եղածը բավական չէ արտոնագիր ստանալու համար: Ես սրանից մեկ դոլար էլ չեմ կարող շինել, իսկ ձեզ վճարում եմ տասը հազար: Մինչ իմ մարդիկ իրացնեն ձեր թղթերը, դուք, ունենալով դրամ, հեշտությամբ արտոնագիր ձեռք կբերեք: Թե ինչ կանեք այն՝ ձեր գործն է: Բայց՝ ոչ, փողը ես կտամ պայմանով, որ արտոնագիր ստանալուց հետո դուք ձեր գյուտը ներկայացնեք «Սփոյլըրս ընդ քոմպանիին»: Համաձա՞յն եք:
— Բայց ախր նրանք ձեր մրցակիցներն են:
— Այդ արդեն իմ գործն է: Համաձա՞յն եք:
Ֆորնսուորնը երկարեց թղթապանակը:
— Հարոլդ, գրիր տասը հազարի չեկ,— Մաք Կրայգը սեղմեց զանգի կոճակը:
— Ահա չեկը,— ասաց Մաք Կրայգ-կրտսերը, ապա դարձավ հորը,— կատարվածի առթիվ միստր Ֆորնսուորնը պետք է որ քեզ մի գավաթ կոնյակ հյուրասիրի:
— Մի ամբողջ շիշ,— խոստացավ գյուտարարը:
Առանձնասենյակ մտավ հսկողության պետը:
— Միստր Սարներ,— նրան դիմեց Մաք Կրայգ-ավագը, որի ձայնն արդեն ոչ մի լավ բան չէր խոստանում,— կուղեկցեք մեր հյուրին և կվերադառնաք այստեղ: Ես ձեզ ասելու բան ունեմ:

Մաք Կրայգները սպասում էին Բարների վերադարձին:
— Հայր, դու իսկապե՞ս հավատում ես այդ պատանու հայտնագործությանը: Քո կարծիքով թղթապանակն արժե՞ տասը հազար:
— Որդիս, ես վճարեցի այդ գումարը ապացուցելու համար Բարներին, որ ինքը ձրիակերի մեկն է: Հիմա նա կփորձի արդարանալ: Իմ ուզածն էլ հենց այդ է: Իսկ անտիգրավիտացիոն հաբերը…— Մաք Կրայգ-ավագը վեր կացավ՝ ձեռքում ասես ծանր ու թեթև անելով Ֆորնսուորնից ստացած թղթապանակը և դուրս գալով սեղանի ետևից, այն նետեց վառվող բուխարու մեջ:— Այդ տիպը սովորական խաբեբա…
Նրան ընդհատեց պատուհանի ապակու թակոցը: Մաք Կրայգները երկուսն էլ շրջվեցին: Պատուհանից այն կողմ, կոնյակի շիշը ձեռքին, օդի մեջ հայտնըվել էր Ֆորնսուորնը:
Թարգմանեց ՎԱՐԴԱՆ ԱՄԻՐԽԱՆՅԱՆԸ

ՀՐԱՉՅԱ ԲԵՅԼԵՐՅԱՆ

# Փոքրիկ հողագործի երգը

(ժողովրդական)

Թող քամին տանի գիլ-գլոր,
Իր չորս հագուստով տարին բոլորի,
Թող վերադառնան հավքերը բոլոր,—
Արևի բերքը—լույսն է բոլորի:

Գարունն է եկել թափանցիկ,
Բռան մեջ զատիկ է բերել:
Հովիկն է հոտոտում հպանցիկ
Բարուրը ձնծաղկի նորածին.
Սրտաչափ արտիկն իմ վարեմ:

Գարուն իմ, ճկվել ես քամուց,
Ասես մի նրբիրան եղեգ:
Աչքերիցս արցունք եմ քամում,
Արտիկս ջրել եմ ցանկանում.
Թռչուններ, մշակն իմ եղեք:

Ամառ իմ, խրախճանք լույսի,
Ստվերների բերքն է անարգել
Դեռ քաղում կեսօրը հուլիսի:—
Սրտաչափ արտիկս մեկուսի
Ծիկաշող թիկնոց է հագել:

Ամառը՝ համառ ու անգութ,
Իր լույսից ինքն է շլացել:
Արևի հայացքից անհագուրդ
Սրտիկս ճաք չտա ինչպես շուրթ,
Ծննղուկներ, թևերդ բացեք:

Աստղազարդ մշուշի ծալքեր.
Աշուն իմ, իմ ոսկեփորիկ:
Թե ժամն է՝ այս բերքն էլ հավաքենք,
Հունձ անենք, մշակներ ու հավքեր—
Արագիլ, ագռավ ու լորիկ:

Խմել եմ լուսնաշող շաղեր,
Լուսնյակի բաղարջն եմ խածել:
Մատներս փոցխ են ու մանգաղ են,
Սրտաչափ արտիկ եմ—կքաղեն
Ոսկեծամ շողերի խրձեր:

Եկել է ձմեռը կրկին,
Արտիկիս դրել սպեղանի.
Ձմեռը բարուրն է արտիկիս,
Ձյուները այլուրն են արտիկիս,
Հավքերն են ընդ-կեր սեղանի:

Ձմեռ իմ, սառցե ապակի.—
Սառցի տակ երկինքն է հոսում:
Երկինքը փաթիլված ու հանգիստ
Իջնում է սրտաչափ արտիկիս.—
Ոտքիս տակ երկինք կա դրսում:

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ



ՌԵՎԱԶ ԻՆԱՆԻՇՎԻԼԻ

# Բաիան

Վրացերենից թարգմանեց ՀՐԱՉՅԱ ԲԱՅՐԱՄՅԱՆԸ

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Բաիան գիտե, որ իր անունը ծաղկի անուն է։ Բաիա ծաղիկը, այսինքն՝ հրանունկը, դեղին է, սաղարթավետ, կանաչ խոտերի մեջ փայլփլում է ինչպես արեգակ։ Երբ ծաղկում է, այսինքն՝ երբ դեղին պսակներ է տալիս, բնին փշե հաստավուն ընկույզներ են մնում։ Հնում այդ ընկույզիկներով «քիթ էին կոտրում»։ Ինչ ասել է «քի՞թ կոտրել»։ Ահա թե ինչ. երբ արյունը կուտակվում էր որևէ մեկի դեմքին, մերօրյա խոսքերով ասած՝ երբ որևէ մեկի ճնշումը բարձրանում էր, պոկում էր բաիա ծաղկի երկար կոթունով փշե ընկույզիկը, խցկում քթանցքն և վրայից ձեռքով խփում։ Արյունը հորդում էր դուրս և ճնշումը կանոնավորվում էր։ Հենց դրա համար բաիա ծաղկին անվանում էին նաև քիթկոտրուկ։

Բաիա աղջկան, չգիտես ինչու, դուր է գալիս քիթկոտրուկը։ Նա կանգնում է հայելու առաջ և զարմացած նայում ինքըն իրեն։ Բաիայի ճակատը, քիթը, այտերի ծայրերը, կզակը և ուսերը նույնպես արևի գույնի են փայլում։ Երբեմն փայլում են նաև աչքերը, բայց ավելի շատ նրանք տխուր են և մշուշապատ, ասես նոր, հենց նոր է արտասվել, ասես սաստիկ ցավող տեղ ունի և այդ ցավն է խեղդում իր մեջ։ Երկար թար-

թիչները էլ իր փշերը չե՞ն արդյոք:

Թինա ուսուցչուհին կանգնեցնում է Բահիային. «Բահիա, աչքերդ ինչո՞ւ են այդքան տխուր: Ինչո՞ւ ես այդքան ընկճված»: Բահիան նկուն է, Թինա ուսուցչուհին՝ բարձրահասակ ու պարթև: Բահիան նրա կրծքին էլ չի հասնում, ուստի պատասխանելու համար գլուխը պիտի ետ գցի, մինչդեռ կախում է, շիկնում ու աչքերն էլ գոցում: Այդ ժամանակ Թինա ուսուցչուհին նրա դեմքն առնում է իր ափերի մեջ, կռանում ու բարձրացնում գլուխը: Բահիան ստիպված ոչ միայն աչքերն է բացում, այլև ժպտում է: Ճիշտ է, ժպտում է, բայց, այդուհանդերձ, Թինա ուսուցչուհին ավելացնում է. «Ինչ-որ բանից վշտացած ես, Բահիա, բայց չես ուզում ասել»: Բահիան ուսերը վեր է քաշում և կրկին գլուխը հակում: Թինա ուսուցչուհին այտը հպում է նրա քունքին, մատները խրում մազերի մեջ, թեթևակի խառնում ու ասում՝ դե, վազիր: Բահիան չի վազում. անշտապ քայլում է ետ, թիկունքով հենվում պատին, աչքերը փակում և այդպես վերապրում ուսուցչուհու ջերմությունն ու բույրը:

Տղաներն աշխույժ են՝ վազվզում են, թռչկոտում, կատակներ անում, իսկ աղջիկները առաջ պարզած ձեռքերի ափերով խփում են իրար ու հաշվում՝ այբ, բեն, նիցա, ռուսների բալնիցա… Բահիան երբեմն խառնվում է նման խաղերի, բայց խաղի ժամանակ էլ տխուր մտածումները հանգիստ չեն տալիս նրան. հայրը վատն է, հարբեցող, ջղային, կռվարար: Խեղճ մայրը հիվանդացել է, օր ու արև չունի նրա ձեռին: Բահիան նույնպես մեղք է, խղճալի. մարմնի մեջ ինչ-որ ցնցումներ է ունենում: Դե, էլ ինչպե՞ս խաղա, ի՞նչ սրտով խաղա… Ահա թե ինչու, ասես շատ շուտ ուժասպառվում է, ասես հոգնում է, նորից կանգնում է պատի տակ ու ձեռքերը թաքցնում ետևում:

Զանգը հնչելուն պես առաջինը Բահիան է վազում դասարան: Նստում է իր տեղը, ձեռքերը դնում առաջը և ուշադիր լըսում: Երբ Թինա ուսուցչուհին ասում է՝ դասդ կարդա, շատ լավ կարդում է, բայց երբ ասում է՝ պատմիր, դժվարանում է, բառեր չի գտնում և անօգ այս ու այն կողմ է նայում: Թինա ուսուցչուհին տեսնելով՝ շատ է նեղվում, նստեցնում է, փաղաքշում ու հորդորում՝ լավ, Բահիա, լավ: Բահիան գիտե, որ ինքը վատ պատմեց դասը, ուստի՝ ամոթահար գլուխը կախում է ու կաս-կարմիր կտրում: Եթե որևէ մեկն այդ պահին ներքևից նայի նրան, կտեսնի, որ աչքերը լիքն են արցունքներով:

Առավոտյան ամենքից շուտ Բահիան է դպրոց գալիս: Մյուս երեխաները գալիս են զուգված, զարդարված իրենց մայրերի հետ և մինչև դասարան չեն մտնում՝ ձեռքները բաց չեն թողնում: Բահիան գըրեթե միշտ մենակ է գալիս դպրոց: Նա մեկ անգամ է միայն հատում մեքենաների ճանապարհը: Բարձրահարկ շենքերի արանքներով վազում է դեռևս չասֆալտած նեղ ճամփով. անցումին հասնելով՝ կանգ է առնում, ուշադիր նայում աջ ու ձախ և համոզվելով՝ մեքենա չկա, արագ անցնում է մյուս կողմը: Այդտեղից սկըսվում է դպրոցը շրջափակող երկաթալարե ասպարը, որի երկարությամբ գալիս է Բահիան և վազում ու բարձրանում դպրոցի աստիճաններով:

Թինա ուսուցչուհին դասարանի բանալին հաճախ թողնում է Բահիայի մոտ. Բահիան բացում է դուռը և պայուսակը դնում սեղանի դարակում: Եթե լավ եղանակ է՝ բացում է դասասենյակի պատուհանները: Գիտե ինչպես կարելի է բացել: Աթոռը մոտեցնում է, կանգնում վրան, փականքը ձգում վեր, թեքում աջ, հետո ուժգին քաշում դեպի իրեն: Պատուհանները բացելուց հետո վերցնում է բարձիկը, ծորակի տակ թրջում, ցամաքեցնում ու ջանադրաբար սկսում փայլեցնել գրատախտակը:

Այդ ընթացքում գալիս են նաև մյուսները՝ և՛ երեխաները, և՛ նրանց զուգված զարդարված մայրերը: Այս մայրերը նույնպես շոյում, գովում են Բահիային. «Դու արդեն այստե՞ղ ես, Բահիա: Ի՞նչ ղոչաղ աղջիկ ես, ապրես, ապրես…»: Երեխաները Բահիայից վերցնում են բարձիկը և շարունակում սրբել գրատախտակը: Բահիան նստում ու զարմացած նայում է նրանց:

Երբեմն, հատկապես շաբաթ օրերին, մայրը ուղեկցում է Բահիային: Բահիայի սիրտը ճմլվում է. գիտե, որ նա մինչև ժամը երեքը չի քնել, իսկ ժամը երեքին տուն է եկել հարբած հայրը: Առավոտյան տեղից վեր կենալու տրամադրություն չուներ մայրը… Բահիան այն էլ գիտե, որ բացի իր մորից, ուրիշ ոչ ոք այլևս բայլոնե շոր չի հագնում. այդ շորի փեշն էլ անընդհատ կախվում է մի կողմի վրա, որ կամ մայրն է ուղղում, կամ Բահիան:

Աստիճաններով բարձրանալուն պես Բահան ասում է. «Դե դու գնա, մայրիկ»: «Թինա ուսուցչուհուն չտեսնե՞մ»: Բահան լռում է: Մայրը բարձրանում է վեր: Բահան ուղեկցում է, կանգնում միջանցքի լուսամուտի մոտ և շուտ-շուտ նայում նրան, բայց՝ գողունի: Գալիս են ուրիշ մայրեր. բոլորը ճոխ հագնված, զուգված, զարդարված, գոհ ու երջանիկ: Բահան զգում է, որ իր մայրը նյարդայնանում է, շրթունքներն է կծոտում: Ահա, գալիս է Թինա ուսուցչուհին: Թինա ուսուցչուհու ներկայությամբ հո բոլորովին փոքրանում է մայրը. կամ ոչ մի բառ չի ասում, կամ խոսում է արագ ու շնչակտուր: Թինա ուսուցչուհին հանգստացնում է նրան, մտերմաբար բռնում դաստակից: Մայրիկը ժպտում է, շառագունում: Հետո ուրախ ժպտալով հեռանում է, բայց այնպես է հեռանում, որ Բահան վախենում է՝ չընկնի՞ հանկարծ:

Բահան դասասենյակի բանալին հանձնում է Թինա ուսուցչուհուն: «Ոսկի ես, ոսկի, Բահա: Եվ ինչ լավն է քո մայրիկը»,— ասում է Թինա ուսուցչուհին: Բահայի գլուխը պտտվում է այդ խոսքերից: Զանգը հնչում է: Երեխաները զբաղեցնում են իրենց տեղերը: Սկսվում է դասը: Թինա ուսուցչուհին իր գեղեցիկ մատներով թերթում է մատյանը: Բահան շատ է սիրում այդ պահը, լռություն է, անդորր: Դրսից լսվում է ինչ-որ թռչնակի երգածայն մեղմ կանչը՝ ճու-ում, ճու-ում, ճու-ում... Տեսնես ո՞ւմ է դաս հարցնելու ուսուցչուհին: Թեև Բահան դասերը սովորել է, բայց չի ուզում, որ իրեն հարցնի...

Վերջին զանգին հո բոլորն են անհամբեր սպասում. միայն Բահան է գրքերը դանդաղ դասավորում պայուսակի մեջ, դանդաղ հագնում վերարկուն, դանդաղ ուղղում վզի շալը, դանդաղ անցնում միջանցքն ու ելնում դուրս: Այստեղ նա փոքր-ինչ կանգ է առնում, խոր շունչ քաշում: Հետո այս ու այն կողմ է նայում ու անչափ հոգնածի նման կամաց շարժվում տուն տանող ճանապարհով: Այդ վերելքը հաղթահարելիս նա մի քանի անգամ կանգ է առնում ու տխուր աչքերը հառում ներքևում խաղաղ տարածված հսկայական քաղաքին: Հետո շարունակում է ուղին: Հո այսպես չպիտի լինի, չէ՞, բայց այսպես է մտածում. «Երանի թե երկար, շատ երկար լինի տուն տանող զառիվերը...»:




Անունը Հրաչիկ էր: Իսկապես հուր աչքեր ուներ՝ կապույտ, խոշոր, հոնքերը՝ բարակ, շուրթերը՝ հաստ-հաստ, իսկ երբ որևէ բանից նեղանում էր, շուրթերը ավելի էր ուռեցնում: Մայրը ժպտալով ասում էր, թե այդպես նմանվում է նեգրի, միայն թե՝ սպիտակ:

Անհոգ տղա էր Հրաչիկը, ավելի շատ սիրում էր խաղալ, քան՝ սովորել: Իսկ



Նկարը ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

սովորել պետք էր։ Ինչով ասես, որ չէր խաղում՝ լուցկու հատիկներով, այգուց հավաքած կաղիններով։ Բայց խաղալուց ավելի հեռուստացույց էր սիրում։ Կարող էր օրերով նստել և նայել։ Նայել ամեն ինչ, իրար ետևից, անխտիր։

Իսկ եթե ֆիլմ էր լինում, մանավանդ՝ ֆանտաստիկ, առանց այն էլ մեծ աչքերը չռում էր, բերանը բացում, և որքան ուզում ես ձայն տուր, գոռա՝ Հրաչիկ, նախաճաշիր, Հրաչիկ, ճաշի ժամն է, Հրաչիկ, դասերդ, չէ, չի լսի…

Եվ Հրաչիկը զայրանում էր, քանի որ արդեն շատ էր ձանձրացել ամեն օր կրկնվող դասերից, մոր ու տատիկի խրատներից, պապիկի զայրույթից։ Նա ուսուցչուհուց՝ ընկեր Ֆլորայից էր դժգոհ, վերջինս էլ՝ Հրաչիկից։

Խեղճ Հրաչիկը երազում էր, որ մի օր, գեթ մի օր հեռու լինի, ազատ ամեն ինչից՝ դասերից, գրքերից, ուսուցիչներից, ամենքից։

Եվ ահա մի օր որոշեց դպրոց չգնալ։ Բռնեց գլուխը ու սկսեց տնքալ։ Մայրը արդեն աշխատանքի էր գնացել, պապիկն էլ տանը չէր։ Միայն տատիկն էր, որը չնայած երբեմն զայրանում էր, բայց երբ Հրաչիկը հիվանդանում էր, ուղղակի կորցնում էր գլուխը։

Տատիկը ձեռքը դրեց Հրաչիկի գլխին, իրար անցավ, դեղեր փնտրեց, չկային։ «Գնամ,— ասաց,— գնամ դեղատուն, ասպիրին բերեմ», և դուրս վազեց։

Հրաչիկին էլ հենց այդ էր պետք։ Ցատկեց անկողնուց ու վազեց պատշգամբ։ Նայեց, հորիզոնը կարմիր էր։ Ինչքան է երազել. գոնե մի օր թռչող ափսե տեսնի։ Հիմա էլ նայեց այդ հույսով։

Ցուրտ էր, շուրջը՝ տարօրինակ լռություն։ Հեռվից եկող ինչ-որ անսովոր բզզոց լսեց։ Նորից նայեց։ Նայեց, ու զարմանքից, այո, ոչ թե ցրտից, այլ զարմանքից մարմինը փշաքաղվեց։ Հորիզոնի կարմիր գծից, ինչ-որ կլոր, պայծառ բան էր անջատվել ու մոտենում էր։ Տրորեց աչքերը, նայեց. մի՞թե թռչող ափսե է։ Իհարկե, թռչող ափսե է, որ կա։ Ինքը որքան էր երազում, որ թռչող ափսեի մարդիկ գան ու իրեն ազատեն ծնողների խրատից, դպրոցից, մանավանդ ընկեր Ֆլորայի ձանձրալի քերականությունից…

Լռությունը սաստկացավ։ Նույնիսկ թռչունների ձայնը չէր լսվում։ Բզզոցն էր, որ մոտենում էր, մոտենում։

Հուզումից թե վախից, Հրաչիկի շրթունքները ուռեցին։ Նա ամուր բռնեց բազրիքից, ասես ուզում էր տեղից պոկել։ Փորձեց ետ գնալ, բայց ոտքերը չենթարկվեցին։ Մագնիսի պես կպել էր պատշգամբի բազրիքից ու պոկ գալ չէր կարողանում։

Հրաչիկը ավելի չռեց առանց այն էլ մեծ-մեծ աչքերը և անսպասելի նկատեց, որ թռչող ափսեն, հսկայական ու մեծ, ֆոսֆորային լույս արձակելով, արդեն կախվել է պատշգամբի դիմաց, օդում։

Մեկ էլ թռչող ափսեի դուռը բացվեց, մի երկար սանդուղք սահեց մինչև պատշգամբի բազրիքը, հենց նրա կանգնած տեղը։ Սանդուղքին երկու հոգի հայտնվեցին։ Հրաչիկը այդպիսի էակներ ոչ կյանքում էր տեսել, ոչ կինոյում։ Նրանք և՛ մարդու էին նման, և՛ մարդանման չէին։ Կարծես մեծ-մեծ մրջյուններ լինեին՝ կլոր, սաղավարտանման գլուխներով, որ փայլում էին մետաղի նման և վերևից երկու կնճիթներ ունեին, անտենաների պես։ Իսկ աչքերը… Աչքերը շտապ օգնության մեքենայի ազդանշանային լույսի պես կապույտ էին ու պտտվում էին իրենց շուրջը։ Բայց դա այնքան էլ զարմանալի չէր, որքան այն, որ այդ էակները վեց ոտքեր ունեին, ավելի շուտ՝ երկու ոտք, մարդու նման էլ ուղիղ քայլում էին, երկու ձեռք և երկուսն էլ ցածում, բարակ մեջքի վրա, ասես պահեստային ձեռքեր էին կամ գուցե պահեստային ոտքեր։

Նրանցից մեկը թեթև թռչելով, իջավ պատշգամբի բազրիքին ու հայերեն, պատկերացնո՞ւմ եք, հայերեն, քանի որ Հրաչիկը նրան շատ լավ հասկացավ, ասաց.

— Լը-սիր-Հրա-չիկ-ըն-դու-նե-ցիր-քո-կան-չը-ե-կանք-օգ-նու-թյան։

— Դուք ովքե՞ր եք,— գրեթե ճչաց Հրաչիկը,— ի՞նչ եք ուզում։

— Իմ-ա-նու-նը-Մըր-ջյուն-է-նը-րա-նը-Ջյուն-Մըր…

— Էհ, ի՞նչ անեմ։

— Հրա-չիկ,— նորից կրկնեց առաջինը ճիշտ ռոբոտի ձայնով։— Դու-կան-չե-ցիր։

Հրաչիկը զարմացավ։ Ի՞նչ ասաց. Հըրաչի՞կ։ Ուրեմն դա ինքն է։ Նրանք լսել են իր ցանկությունը և եկել տանելու։

— Հա,— ասաց Հրաչիկը,— կանչել եմ… Ուզում եմ…

— Գը-նանք-Հրա-չիկ։

Մոռացած ամեն ինչ՝ և՛ մորը, և՛ պապիկին, և՛ խեղճ տատիկին, որ դեղատուն վազեց ասպիրին գնելու, մոռացած դպրոցը, մանավանդ ընկեր Ֆլորային, Հրաչիկը սենյակ վազեց, որ հագնվի։ Նայեց, սեղանին դասագրքերն էին, կիսաբաց ընկած իրար վրա, տետրակները՝ լիքը ջնջումներով։ Ինչ լավ է, որ ազատվում է այս բոլորից, ինչ լավ է, որ գնում է, հեռանում…

Աչքը ընկավ սեղանին դրված լուսանկարչական ապարատին։ Մայրն էր գնել ծննդյան օրը։ «Սվեմայի» մեջ երեկ երեկոյան իր ձեռքով նոր ժապավեն էր դրել, մտածելով, որ հաջորդ կիրակի մայրը գազանանոց կտանի։ «Էհ,— ձեռքը թափ տվեց նա,— մնացեք բարով, գազաններ», և արագ վերցնելով «Սվեման», դուրս վազեց։

— Գը-նա-ցինք,— չոր ասաց Մըր-Ջյունը և ամուր բռնեց Հրաչիկի ձեռքը։ Բռնեց ու վեր քաշեց։

Հրաչիկը ցնցվեց։ Ձեռքը պողպատի ամրություն ուներ և շատ սառն էր։ Փորձեց ազատվել, չկարողացավ։ Ասես աքցանով էին բռնել։

— Գը-նա-ցինք,— կրկնեց նա ու Հրաչիկին տարավ։

Թեթև շխկոցով փակվեց թռչող ափսեի դուռը։ Նորից լսվեց անծանոթ դըզզոցը։ Հրաչիկը պոկվեց Մըր-Ջյունի ձեռքից, կամ գուցե նա թողեց, և դեպի լուսանցույցը վազեց։ Դրսում ոչինչ չկար։ Ո՛չ իրենց տունն էր երևում, ո՛չ քաղաքի շենքերը, ո՛չ դիմացի սարերը, ո՛չ էլ նույնիսկ երկինքը, ամպերը։ Մշուշ էր, կապույտ-սևավուն մշուշ ու մեկ էլ՝ արևի լույսը, ուժեղ, առատ։ Հրաչիկը նույնիսկ աստղեր տեսավ։ Օրը ցերեկով՝ աստղեր։ Նրանք մեծ-մեծ աչքերի նման լուսանցույցից Հրաչիկին էին նայում։ Եվ Հրաչիկը անսպասելի զգաց, որ իր համար հիմա ոչ ժամանակ կա, ոչ տարածություն, ամեն ինչ անհուն է, անվերջ և… և ինքը ազատ է ամեն ինչից։

— Մենք ո՞ւր ենք գնում,— հարցրեց Հրաչիկը՝ աչքը լուսանցույցից չկտրելով։

— Մենք-գը-նում-ենք-Օստա-Վե-գա։

— Ո՜խ,— Հրաչիկը փռվեց դիմացի բազմոցին ու աչքը հառեց լուսանցույցի ապակուն, որը նրան հիմա հեռուստացույցի էկրան էր թվում։ Եվ ինչպես էկրանի վրա, նրա դիմացից գալիս անց էին կենում ինչ-որ աստղեր՝ պոչավոր ու անպոչ, քարեր՝ վառվող ու չվառվող…

— Վեր-կաց,— անսպասելի հնչեց Մըր-Ջյունի ձայնը։— Ծույ-լը վատ տղա-է։

Հրաչիկը վախեցած վեր թռավ։

— Նըս-տիր, այս-տեղ,— Մըր-Ջյունը մատով ցույց տվեց անկյունի սեղանը, որի վրա գրքեր էին թափված, տետրակ-

ներ: Եվ ճիշտ այնպես, ինչպես իր գրասեղանին, տանը:

— Դու-գր-նում-ես-Օստա-Վեգա-պի-տի-ի-մա-նաս-որ...

— Նորից դասե՞ր,— ճչաց Հրաչիկը,— ախր ես:— Եվ ունգրեց շուրթերը:

— Դու-ներ-մակ-նե-գըր-չես-դու-պի-տի-ի-մա-նաս:

— Իսկ դու որտեղի՞ց ես լսել մայրիկիս խոսքերը:

— Լը-ոնր,— և նորից Մըր-Զյունի սառը, պողպատի պես ամուր ձեռքը բռնեց նրան:

Հրաչիկը փորձեց խուսափել ու մեկ էլ զգաց, որ իրեն մի քանի տեղից են բռնել, ու սարսափով նկատեց, որ Մըր-Զյունը գործի է դրել նաև մեջտեղի՝ պահեստային ձեռքերը:

— Նախ-հան-րա-հա-շիվ... պետք է-ո-րո-շել-անկ-յան-մե-ծու-թյունը-ալֆա-օ-մեգա:

— Ես չգիտեմ, չեմ կարող: Ի՞նչ է, ձեր Օստա-Վեգան հիմա ալֆա-օմեգա դարձա՞վ, հա՞:

Մըր-Զյունի աչքերը սկսեցին ավելի թափով պտտվել: Եվ կարմիր դարձան: Հրաչիկը կծկվեց, փորձեց գրիչը վերցնել: Գրիչից ինչ-որ ձայներ լսվեցին. «Պի-պի»:

— Պի, —ասաց Հրաչիկը ու նայեց Մըր-Զյունի կարմիր, պտտվող աչքերին:

— Չը-գի-տես-ո-չին-չը... Քե-րա-կա-նու-թյու-նը...

— Հիմա էլ քերականություն: Ախր, ես հիվանդ եմ, տատիկս, ով գիտի, արդեն դեղը բերել է:

— Ա-սա-թե-ինչ-բան-է ա-ծա-կա-նը...

— Ախր, դու որտեղի՞ց հայերեն գիտես, է, չէ՞ որ դու օտար մոլորակից ես:

— Մենք-ա-մեն-բան-ըս-վո-րել-ենք-դու-պի-տի-ըս-վո-րես...

Հրաչիկը գլուխը կախեց գրքի վրա, իբր թե կարդում է: Բայց միտքը համառ մի քանի վրա էր պտտվում: Նորից սովորե՞լ: Ուրեմն, Օստա-Վեգա հասնելու համար էլ սովորել է պետք:

Եվ սրտում անսպասելի մի ցավ զգաց: Ցանկացավ տուն գնալ: Գոնե այնտեղ հարազատներն են: Մինչ այդ նա չգիտեր, թե ինչ է կարոտը: Երազելը հզոր էր: Անա, ինքը թռչող ափսեում է, այս տարօրինակ արարածների հետ, որոնք չգիտես՝ մա՞րդ են, մեքենա՞, թե՞ ռոբոտ: Եվ ինչ էլ որ են, անտարբեր են:

Նայեց: Մըր-Զյունը գնացել էր Զյուն-Մըրի մոտ, որը վահանակի կողքին կանգնած՝ ղեկավարում էր թռիչքը: Քիչ անց Մըր-Զյունը կանգնեց վահանակի մոտ, և Զյուն-Մըրը դարձավ իր կողմը:

— Սա էր պակաս,— փնթփնթաց Հրաչիկը,— շրջվեց տեղում, և ձեռքն անսպասելի դիպավ ուսից կախված «Սվեմային»: Արագ դուրս քաշեց ու սկսեց նկարել Մըր-Զյունին՝ վահանակի մոտ, Զյուն-Մըրին, որ դանդաղ մոտենում էր:

— Դու-այդ-ինչ, դու-այդ-ինչ:

Նա կատաղած իր չորս ձեռքով բռնեց «Սվեման» ու արագ մոտենալով լուսանցույցին, դուրս գցեց:

— Վայ,— գոռաց Հրաչիկը,— ապարատս, մայրիկիս նվերը: Հիմա տատիկս ինձ է փնտրում: Իսկ պատշգամբի դուռը բաց է մնացել: Եթե ինձ չգտնի, կվախենա:

Նրա աչքին երևացին տատիկի, պապիկի հոգնած դեմքերը, մորը հիշեց: Մի ժամ էլ չի անցել, կարոտել է: Հապա դպրո՞ցը, ընկերնե՞րը: Հիմա, երևի, նրանք վազվզում են բակում:

— Ու-րե-մըն-ա-ծա-կա-նը,— ասաց Զյուն-Մըրը մի ուրիշ ձայնով:

Հրաչիկին թվաց, թե ընկեր Ֆլորան է: Ախր, նույնիսկ ընկեր Ֆլորային էր կարոտել:

— Չեմ ուզում ձեր դասը: Իմ դասը, իմ դպրոցը, ընկեր Ֆլորան:

— Չես-ու-զում-խու-խու-խու,—խռխռաց Զյուն—Մըրը:

Հրաչիկը նայեց: Նրա պտտվող աչքերը սևացել էին:

Զյուն-Մըրը թափով, այս անգամ արդեն վեց ձեռքով, քանի որ զայրույթից ոտքերն էլ էր գործի դրել, բռնեց Հրաչիկի վզից ու տարավ դեպի լուսանցույցը: Հրաչիկը բացեց ձեռքերը ու սկսեց սավառնել...

«Տիեզերքից մարմինները ընկնելիս, երբ հասնում են մթնոլորտային շերտին, շիկանում են».— մտածեց ու զգաց, որ սկսում է այրվել:

Ուժեղ ցնցումից Հրաչիկը վեր թռավ: Անկողնում էր: Կողքին զրնգում էր զարթուցիչը: Ու բոլորը երազ էր: Բայց մի՞թե երազը այսպես է լինում: Վերցրեց ու քարացավ: Հաշվիչը երեսուներկուերորդ թվի վրա էր, անինչ երեկ դրել էր գրոյին: Ի՞նչն է նկարել, թե...

Հարցը մնաց անպատասխան: Պարզ կլինի. երբ նա երևակի «Սվեմայի» ժապավենը:



## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

# Աշխարհի բանը

Լոկ մարդն է տերը այս մեծ բնության.
Խելքով է տիրել նա այս աշխարհին,
Տարբեր են մարդիկ բնավորությամբ,
Տարբեր են, անշուշտ, չարը և բարին:

Խելոքն է անշուշտ տարբեր հիմարից,
Ժլատն է տարբեր մարդուց մարդասեր,
Ի՞նչ է տանելու նա այս աշխարհից՝
Գուցե մի գանձ կամ միգուցե և սեր:

Մարդը աշխարհից ոչինչ չի տանում,
Մնում է մի լավ բան թողնել նրան,
Մի լավ գործ կամ էլ խոսքեր իմաստուն,
Որ օգնեն մարդուն ու հավերժ մնան:



Ես չեմ եղել այն ժամանակ,
Երբ եղել են եղեռն, կռիվ,
Թուրքն է հանել մեր դեմ բանակ,
Տվել ենք մենք զոհեր անթիվ:

Մեծերից եմ ես այդ լսել,
Կարդացել եմ ես գրքերում,
Եվ զայրույթս է երկինք հասել՝
Ուղղված այնտեղ քար աստըծուն:

Աստված, մի՞թե դու չտեսար
Զոհերը մեր հայոց ազգի,
Ինչու գթով դու չհասար,
Արգելք չեղար թուրքի բազկին:

Թե կույր էիր՝ գեթ լսեիր
Ողբը խեղճ մոր որդեկորույս,
Թե խուլ էիր՝ գեթ տեսնեիր
Դեմքը որբի՝ խեղճ ու անհույս:

Ո՛չ լսեցիր, ո՛չ տեսար դու
Անմեղ ազգի մի կոտորած,
Դիմում եմ քեզ կանչով հոգու՝
Ետ բեր գոնե հողն իմ կորած:



Ցրված է ազգս ամբողջ աշխարհով,
Ցրված է, ավա՜ղ, ձեռքով մի չարի,
Տեսել է ազգս անհուն արյան ծով,
Բայց հույսը սրտում երբեք չի՛ մարի:

Ցրված է ազգս նման աստղերի,
Հայի օջախ կա ամեն մի երկրում,
Արարատ լեռս դարձել է գերի,
Բայց հույսը վառ է միշտ հայի սրտում:

Թուրքը ենեգորեն տարավ մեր Անին,
Եվ լեռները մեր, ծովը մեր Վանա,
Գերեց ենեգորեն նա մեր Սիփանին,
Բայց ազգս երբեք կիսված չի մնա:

Չի՛ մնա ծովն իմ Սևանա՝
Զատված մյուս ծովից Վանա,
Չի՛ մնա լեռն իմ Արագած՝
Արարատին դեռ չհասած:

Ամեն մի հայի սրտում վառ հույս կա,
Որ Մասիսն էդպես անհայտ չի մնա,
Մասիսը սիրտն է իմ հայոց ազգի,
Ամուր մկանը, հայկական բազկի:

Մի՞թե կարող է մարմնից սիրտը,
Բազկից մկանը զատվել անխնա,
Ոչ, անհնար է, էս է իմ միտքը՝
Լեռն իմ ետ կգա, էդպես չի՛ մնա:

ԱՇՈՏ ՊԵՏՐՈՍՅԱՆ

Լենինական, Գ. Սունդուկյանի անվան № 20 դպրոց, 10-րդ դասարան

# Ամռան գիշեր

Երբ գիշեր է գալիս,
Նիրհում են բոլորը.
Տրիտոն է անհանգիստ
Խախտում մեր անդորրը:
Ու շներն են գյուղի
Հաչում ու կլանչում,
Ամեն, ամեն գիշեր
Հեռվից իրար կանչում:
Լուսնյակն անհ ելել
Ճրշում է երկնքում—
Այսքան աստղ-լապտեր
Ես չեմ տեսել կյանքում:

ԱՎԵՏԻՔ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Կամոյի շրջան, գյուղ Նորադուզ, 6-րդ դաս.

# Թումանյանի Գիքորը

Ես կարդում եմ քո մասին,
Սիրտս լցվում է վշտով,
Կարծես քեզ հետ միասին
Տանջվում եմ, ախ, ամեն օր:

Ու արցունքներդ եմ սրբում
Սառած դեմքիդ վրայից,
Վերարկուս քեզ հագցնում,
Որ չմրսես դու ցրտից:

Ու մայրիկիցս թաքուն
Միրգ եմ պահել ամեն օր
Ու քեզ տալ եմ ուզեցել
Իմ խեղճ, թշվառ իմ Գիքոր:

# Գիշերային լռություն

Խոր գիշեր է:
Երկինքը՝ պարզ, աստղալի,
Ոչ մի ցողուն չի շարժվում,
Չկա անգամ թույլ քամի:

Լուսինն անգամ սահում է լուռ,
Աստղերը՝ լուռ փայլփլում,
Կարծես կյանքը կանգ է առել,
Տիրել է խոր լռություն:

Ու այդ խորին լռության մեջ
Ոչ մի շշուկ չի լսվում,
Կենդանություն չկա կարծես
Ծղրիդն անգամ չի երգում:

ՄԱՐԻԱՄ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ, Լենինական, Ալ. Շիրվանզադեի անվան № 1 դպրոց, 10-րդ դաս.



ԼԱՈՒՐԱ ՍՈՂՈՅԱՆ, 12 տ., Լենինական



# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

## Հայ ժողովրդին

Օ, քարաշեն, իմ Հայաստան աշխարհ,
Որ ծնվեցիր պատմության պատերի մեջ
խարխուլ,
Բույն դրեցիր լեռների ծվարներում խորունկ
Ու մեծացրիր պապ Հայկի սերունդը քո
գրկում:

Դու ամուր ես, ինչպես քարը քո հողի,
Հզոր՝ ինչպես լեռը Մասիս,
Ունես մաքուր, ամուր մի սիրտ,
Ինչպես փոքրիկ Սևանն է վճիտ:


ԱՂԱՍԻ ՊԵՏՐՈՍՅԱՆ 12 տ.

## Տատիկս ու պապիկս

Ծերացել է տատիկս,
Ծերացել է պապիկս,
Մազերն էլ են ճերմակել,
Սպիտակ ձյան
Փաթիլ են դարձել:
Ախ, տատիկ ջան, պապիկ ջան,
Որքան քրտինք եք թափել,
Ինչ տանջանք եք տարել,
Աշխատել եք ամեն օր,
Որ օրեր գան տաք ու նոր:

Եվ դուք տուն եք կառուցել,
Վեց զավակի տեր դարձել,
Պահել, սնել, մեծացրել,
Դարձել հայրիկ ու մայրիկ,
Հետո՝ տատիկ ու պապիկ:
Եվ ձեր նման մարդկանց հետ
Դարձել ազգ ու հայրենիք:

ՄԵԼԻՆԵ ՍԱՐԳՍՅԱՆ
Ստեփանավանի շրջ., գ. Ուռուտ, № 158 դպրոց,
7-րդ դաս.


ՄԱՐԳԱՐԻՏ ԱԼԵՔՍԱՆՅԱՆ, 13 տ.
Լենինական

# Գրադարանում

«Մանկություն» շարքից
Խոսք՝ ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆԻ

Allegretto

1. Այս քնչ - քան շատ են գըր-քե - րը այս-տեղ, բո - լորն էլ լավն են, բո-լորն էլ ըն - քեղ:
2. //// - րել կար - դալ դեռ ես չըն - գի-տեմ, այս - քան գըր - քե - րը ես ե՞րբ պիտ կար-դամ: Մայ-րիկ ջան, մայ-րիկ, ինձ շատ դըժ-վա-րը տար, որ այս բո-լո-րը հաս-ցը-նեմ կար - դալ: Որ այս բո-լո-րը հաս-ցը-նեմ կար - դալ: Իսկ գը-////-նեմ կար - դալ:

Երաժշտությունը՝ ԱՐԱՄ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ — Կիրովական, 9-րդ դաս.



ԼԱՈՒՐԱ ՍՈՂՈՅԱՆ, 12 տ.



# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

## Երազում

Երազումս ի՞նչ տեսա՝
Տեսա Վանա մի ծովակ,
Ծովի ափին մի գյուղակ,
Հայոց աշխարհ ես տեսա:

Տան կտուրից ես տեսա,
Սիփան սարը ձյունաթագ,
Լեռան վրա գյուղ տեսա,
Անին ավերված տեսա:

Երբ զարթնեցի, ի՞նչ տեսա...
Ո՛չ մայր Անի ես տեսա,
Ո՛չ Վանա ծով ես տեսա,
Ո՛չ էլ Սիփան սար տեսա:

ԱՐԱ ԱՎԵՏԻՍՅԱՆ
Լենինական, Պուշկինի անվան № 6 դպրոց,
8-րդ դաս.

## Աշնանային մանկություն

(համարյա ինքնակենսագրական)

Խաղաղ շշունջն է տիրել քաղաքին,
Ոչ ոք չի շարժվում, քնել են ասես,
Իսկ խենթուկ քամին օրորում մեկին,
Խարտյաշ ծամերն է գուրգուրում անտես:

Հուշեր արթնացնող քաղաքը նիրհող
Երազե հուշեր ծնեց իմ հոգում,
Խաղաղ երկինքը՝ թաքուն նինջ բերող,
Անցած մանկության շիրիմն է սգում:

Օ, աշուն, աշուն: Աշնան քաղաքում
Դալուկ արևը ժպտում է թաքուն:
Օ, աշնանային պեծածանում՝ դու վեհ դալկություն,
Իմ հեռավորս, ու իմ մանկություն:

Ծառերի դեղին հոսանքում կորած աշնան արահետ,
Մանկություն, կորած իմ ճամփա անհետ
Դեղին լազուրում ահա խեղդվող մի պուճուր առու,
Ասես փախչում է անտառից հեռու, ամենքից հեռու:

Իսկ այնտեղ դեղին տերևների հետ
Մրցում է ուրախ փոքրիկ աղավնին
Ու պարում օդում դեռ անհոգ, անգետ՝
Գալիք կատարվող հուշիկ վայրէջքին:

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՀԱԿՈԲՅԱՆ (ՀՈՎԱԿ)
№ 112 միջն. դպրոց, 9-րդ Բ դաս.



Շատ չսպասեց
Ծույլ Թամարը,
Շատ շուտ եկավ
«7» համարը:
Նստած էր նա
Ոտը-ոտին,
Երբ ներս մտավ
Նախշուն տատին:
Պառավ տատը
Նայեց-անցավ,
Թամարն իբր
Չհասկացավ:
Այսպես անցան
Երկու կանգառ,
Թամարն եղավ
Ինչպես մի գառ.
— Նախշուն տատի,
Դե, համեցեք,
Ես իջնում եմ,
Դուք նստեցեք:
— Ապրես,— ասաց,—
Խելոք Թամար,
Բայց իջնում ես
Ո՛չ ինձ համար:

ԹԱՄԱՐԱ ԶՈՐԲԱՆՅԱՆ
Լենինական, Ռաֆֆու անվան
№ 3- դպրոց, 6 րդ դասարան

# Վաղ գարուն

Ձմեռը գնաց, գարունը եկավ,
Բայց վաղ գարունը գարնան չէր նման,
Սա իսկականից աշնան է նման,
Որ արցունքոտվում ու լաց է լինում…

Եվ արտասվում է բնությունը ողջ,
Ու իր երկնային ջինջ արտասուքից
Երկիրքն է ժպտում իր կնճիռներով.—
Արևն է փայլում երկնակամարից:

Եվ երբ տարերքն է հանդարտվում, լռում,
Գարնան շնչով է լցվում երկիրքը,
Լցվում է հոտով, շնչով ծաղկունքի,
Մոտ է ցանկալի ժամը բերկրանքի:

ԳԱՌՆԻԿ ԳԵՎՈՐԳՅԱՆ
Երևան, № 188 դպրոց, 6-րդ դասարան

# Գարուն

Գարունը եկավ այն ժամանակ,
Երբ ծիլը դեռ չէր արթնացել,
Աղբյուրն էր միայն հոսում սառնորակ,
Եվ ծովի նման
Ալիքներով էր երկիրքը լցվել:

Գարնան բույրով լցվել էին
Դաշտ ու անտառ, այգի ու բակ,
Այդ բույրը շնչող իմ մայրիկին,
Նվիրեցի մի փունջ մանուշակ:

ՀԱՆԱՆ ՆԻՍՅԱՆ
Մասիս ավան, № 2 միջն. դպրոց, 6-րդ դաս.

# Կապուտաչյա աղջկան

Կապուտաչյա սիրուն աղջիկ,
Երազիս մեջ ցոլացիր,
Երազիս հետ անհետ կորար
Ու երազ էլ մնացիր:

Սակայն թողիր դու իմ սրտում
Սիրո անշեջ մի կրակ,
Որ սկիզբ առավ կայծից փոքրիկ
Քո աչքերը կապուտակ:
Քո աչքերում ես զգացի
Կապույտ, անծայր մի օվկիան,
Անամպ ու ջինջ երկինք տեսա
Քո աչքերում աննման:
Քո աչքերում գարուն տեսա,
Կյանք տեսա քո աչքերում,
Լուռ ու հանգիստ մի ծով տեսա,
Որ լոկ ներքուստ էր հուզվում:
Քո աչքերում ես սեր տեսա
Անկեղծ, մաքուր ու վճիտ,
Քո աչքերում կարոտ տեսա,
Որը պատճառն էր վշտիդ:
Քո աչքերում տեսա ես այն,
Ինչ տեսնել չէր վիճակվել,
Քո աչքերում տեսա ես այն,
Որն ինձ վաղուց էր հուզել:
Կապուտաչյա սիրուն աղջիկ,
Երազիս մեջ ցոլացիր,
Երազիս հետ անհետ կորար,
Բայց իմ սրտում մնացիր:

ՍՈՖՅԱ ՊԱՊՈՅԱՆ
Լենինական, Ա. Պետրոսյանի անվան
միջն. դպրոց, 10-րդ դաս.

# Աշուն

Խայտաբղետ, ոսկեզօծ,
Տաք գույներով վրձինված,
Ծառի տերևը պոկված
Ոսկե թելով է հյուսված:
Կռկռացին, կռունկները,
Ասին՝ ցուրտ է, գնացին:
— Մնաք բարով,— ասացին
Արագիլներն այս գարնան,
Որոնք գարուն բերեցին
Ու թևերով ետ տարան:
Սրսփում է ու մրսում՝
Տխուր երգը իր սրտում,
Տաք օրերը մոռացած՝
Ծառը տկլոր, լուռ կանգնած:

ՄԱՆՅԱ ԱՎԵՏԻՍՅԱՆ
Լենինական, Հ. Կարախանյանի անվ.
միջն. դպրոց

# Ինչպես դեմոկրատ դարձ

ՀՐԱՉՅԱ ՄԵԼՔՈՒՄՅԱ

Քսան տարի առաջ, երբ դեռ սովորում էի ընդամենը հինգերորդ դասարանում, ես հասկացա, թե ինչ բան է իսկական դեմոկրատիան: Դուք երևի կարծում եք, որ ես ամբողջ օրը գրքե՞ր էի կարդում, ցնցվում միապետների ոճրագործությունների՞ց, հիանում պերիկլեսյան Աթենքո՞վ: Բնավ: Ընդհակառակը, ես նույնիսկ դասերս կարգին չէի սովորում, իսկ ամենաբարդ ու խճճված պրոբլեմները լուծում էի առանց գլուխ կոտրելու, բնավորության հատուկ սահուն թեթևությամբ:

Մի անգամ, իհարկե, պատահաբար (հետագայում ես դա դասեցի պատմական պատահականությունների շարքում), ես ու հայրս ընկանք մեր քաղաքն այցելած աշխարհի շախմատի չեմպիոնի պատվին կազմակերպված տոնակատարության մեջ: Մենք իհարկե չտեսանք նրան, բայց տոնակատարությունը մեզ վրա շատ մեծ տպավորություն թողեց, մանավանդ, որ տրանսպորտային երթևեկության բացակայության պատճառով ստիպված էինք ոտքով տուն հասնել:

Եվ իհարկե հենց նույն օրը, ընթրիքի ժամանակ, ես որոշեցի աշխարհի շախմատի չեմպիոն դառնալ: Նախ՝ ի տարբերություն մյուս սպորտաձևերի, շախմատի չեմպիոն դառնալու համար անպայման չէ առավոտ վաղ, անքուն սատանայի պես վազել մի քանի կիլոմետր, ծանր բեռներ բարձրացնել, սառը ջրով ցողվել և այլ բազմաթիվ տհաճություններ կրել: Երկրորդը՝ ֆիզիկական տվյալներս, ավաղ, ինձ ստիպում էին ձեռք քաշել նաև «Սպորտի թագուհուց». մի՞թե կարելի է այսպիսի կարճ ու հաստլիկ ոտքերով վազել կամ ցատկել այսպիսի կլորիկ փորով, իհարկե՝ ոչ: Նուրբ ձեռքերով չէի կարողանում անգամ լիքը պայուսակս տեղ հասցնել, դրա համար էր այն միշտ կիսադատարկ: Գիտության ծարավն էր պակասում իմ մեջ, ինչպես ասում էր մեր դասղեկ ընկ. Ավագյանը: Մեր հարավային քաղաքում սահադաշտի բացակայության պատճառով ստիպված էի հրաժեշտ տալ և մանկությանս



երազանքին՝ ձևավոր՝ չմշկասահքին:

Ինչպես տեսնում եք, ֆիզիկական, պատմա-հասարակական և նույնիսկ բընակլիմայական պայմանները ենթագիտակցորեն ինձ հրում էին դեպի շախմատը: Իսկ ի՞նչ կարող էի անել ես, պատմության անիվի տակ ընկած խեղճ ավազահատիկս՝ միմիայն Նեմցովիչ կարդալ, մանավանդ, որ մեկ շաբաթից սկըսվելու էր շախմատային դպրոցական ըսպարտակիադան:

— Շախմատն էր պակաս,— բորբոքվեց մայրս, երբ լսեց ապագա պլաններըս,— դաշնամուրի գնաց, ակորդեոնի գնաց, կիթառի գնաց... հազար ու մի անպետքություն ենք առել տունը լցրել, հիմա էլ՝ շախմատ: Ոչ մի շախմատ:

Այո, կանացի ուղեղը ամեն ինչ հանգեցնում է մանրածախ առևտրի: Մի՞թե նա ընդունակ է հաճույք ստանալ Լասկերի կամ Կապաբլանկայի, Ալյոխինի կամ Պետրոսյանի հիասքանչ պարտիաներից, իհարկե՝ ոչ:

Բայց ես երբեք չեմ դավաճանում իմ համոզմունքներին: Մի ամբողջ շաբաթ ես շախմատային գրականություն էի հայթայթում գրադարաններից, մի ամբողջ շաբաթ մինչև կեսգիշեր ուսումնասիրում էի բոլոր մեծ գրոսմայստերների խաղարճը, կոնսպեկտավորում, ծածկագրերի էի վերածում նրանց գամբիտների, սկըզբնախաղերի ու էնդշպիլների քայլերը: Իսկ հին ու նոր հնդկական, իսպանա-վրացական, ու ավստրո-հունգարական պաշտպանությունները գիտեի դպրոցի դիրեկտորի բնավորությունից ոչ պակաս:

Ոգևորված հայրս նույնիսկ շախմատ գնեց: Այն շատ գեղեցիկ էր. նրբագեղ ձիերը անտիկ քանդակներ էին հիշեցնում, նավակները՝ միջնադարյան ամրոցներ, իսկ փղերի, թագուհիների, արքաների ու զինվորների փայլը չէր զիջում մայրիկի բյուրեղապակե սպասքի փայլին: Բայց ամենից շատ ինձ դուր էր գալիս փայտի հոտը: Ես օրը մի քանի անգամ բացում էի շախմատի տախտակը և հոտոտում ֆիգուրները:

Ահա և բաղձալի օրը: Փաթեթավորած շախմատի տախտակով, վերջին օրերի մոդայիկ սանրվածքով, մանրակրկիտ փայլեցված կոշիկներով, բծախնդրորեն արդուկված վերնաշապիկով ես շտապում էի դպրոց՝ մասնակցելու իմ մեծ կարիերայի առաջին մրցաշարին: Հակառակորդիս ածխի նման սև, անհանգիստ աչքերը և վզկապի կրծած ծայրերը վկայում էին նրա անհանգիստ բնավորության մասին: Այդպիսիների դեմ պետք է դիրքային սառը պայքար մղել: Ես դանդաղ տեղադրում էի խաղաքարերս՝ փնտրելով Պետրոսյան—Բոտվիննիկ մատչի իններորդ պարտիայի քայլերը: Ես քծծիծաղով հետևում էի ախոյանիս անգրագետ քայլերին: Նա նույնիսկ չէր կասկածում, որ խաղատախտակի վրա ծավալվում է հին հնդկական պաշտպանության տարբերակներից մեկը, որ այս տարբերակում զինվորի զոհաբերությունից խուսափել է ինքը՝ Բոտվիննիկը: Ծանր խաղաքարերս կենտրոնացնելով, ես սկսեցի մամլիչ ճնշման ենթարկել նրա արքայական թևը. յուրաքանչյուր գրոսմայստեր նկատելով իր ողբալի վիճակը՝ կհանձընվեր, բայց այս անգետը խփում է աջ ու ձախ, առանց որևէ կանոն հաշվի առնելու: Իսկապես, անպատկառ սերունդ է աճում հիմա:

Մատչից հետո, ջախջախված ու հուսախաբված՝ քանզի պարտվել էի ոչ միայն ես, պարտվել էին Պետրոսյանն ու Ֆիշերը, Լասկերն ու Լարսենը, Կապաբլանկան, Բոտվիննիկը իր դպրոցով հանդերձ, Հակոբյանը, «Շախմատային Հայաստանը», երբ վերլուծում էի պարտության պատճառները՝ ես համոզված դեմոկրատ դարձա: Ես հասկացա, որ շախմատում մինչև վերջ լուծված չէ դասակարգերի հարցը: Թագավորները նավակներով ըզբոսնում են ձախից աջ կամ աջից ձախ, իսկ խեղճ զինվորները զոհվում են յուրաքանչյուր րոպեն մեկ: Ձիերն ընկնում են փղերի ոտքերի տակ, իսկ թագուհիները տանը չեն նստում:

Օ, ինչպես էի ես խաբվել, ես՝ դեմոկրատ պիոներս ու ինտերնացիոնալ խմբակի անդամս, ինչպե՞ս կարող էի այսպիսի ուզորպատորական խաղ խաղալ:

Այ, ուրիշ բան է շաշկին՝ բոլոր խաղաքարերը համազոր են, ոչ մի կախյալ վիճակ թագավորներից: Լիակատար դեմոկրատիա:

— Շաշկին էր պակաս,— բորբոքվեց մայրս, երբ լսեց ապագա պլաններս:

— Շաշկին կարելի է խաղալ և շախմատի ֆիգուրներով,— քաղաքական կարճատեսություն ցուցաբերեց հայրս:

Բայց իմ նոր աշխարհայացքը պահանջում էր յուրաքանչյուր խաղ խաղալ տըվյալ խաղի խաղաքարերով:

ԴՄԻՏՐԻ ԼԻԽԱՉՈՎ

# Խղճի տագնապներ

Նկարները՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ԽԱՉԻԿՅԱՆԻ

Իսկական պատիվը միշտ հաշտ է խղճի հետ:

Կեղծ պատիվը պատրանք է անապատում, մարդկային հոգու անապատում:

Եվ վնասակար պատրանք, որ ծնում է կեղծ նպատակներ և մոլուսում, իսկ երբեմն էլ կործանում է իսկական արժեքները:

Վաղուց, շատ վաղուց ինձ ուղարկել էին «Ասք Իգորի գնդի մասին» գրքի կարևոր մի հրատարակություն: Երկար ժամանակ չէի կարողանում հասկանալ, թե ինչ է կատարվել. ինստիտուտում ստորագրել էին, որ գիրքն ստացված է, իսկ գիրքը չկար: Վերջապես պարզվեց, որ այն վերցրել է հարգարժան մի կին: Ես հարցրի այդ կնոջը. «Դո՞ւք եք վերցրել գիրքը», «Այո,— պատասխանեց նա,— ես եմ վերցրել: Բայց եթե ձեզ այդքան անհրաժեշտ է, կարող եմ վերադարձնել»: Ասաց ու հիմայիչ ժպտաց: «Բայց չէ՞ որ գիրքն ինձ է ուղարկված: Եթե այն պետք էր ձեզ, կարող էիք խնդրել ինձանից: Իսկ դուք ինձ հիմար վիճակի մեջ գցեցիք այն մարդու առաջ, ով գիրքն ուղարկել էր ինձ: Ես նույնիսկ շնորհակալություն չեմ հայտնել նրան»:

Առաջին հայացքից թվում է, թե չնչին բան էր կատարվել: Մանավանդ հիմա որևէ մեկից գիրք վերցնելը, «մոռանալը» ու չվերադարձնելը համարվում է սովորական բան: Շատերն արդարանում են՝ իբր այդ գիրքն իրենց ավելի է հարկավոր, քան տիրոջը, չեն կարող ապրել

առանց այդ գրքի, իսկ տերը կարող է... Տարածվել է մի նոր երևույթ՝ «ինտելեկտուալ» գողություն, որն, իբր, արժանի է ներողամտության և արդարացվում է գրքի հանդեպ ունեցած հափշտակվածությամբ, մշակույթի հետ շփվելու բուռն ձգտումով: Երբեմն նույնիսկ ասում են, թե գիրք յուրացնելը բնավ էլ գողություն չէ, այլ ինտելիգենտության նշան: Իսկ ձեզ չի՞ թվում, որ դա պարզապես գույներ չտարբերելու թերություն է՝ դալտոնիզմ: Բարոյական դալտոնիզմ: Գողությունը գողություն է, անազնիվ արարքը մնում է անազնիվ, ինչով էլ փորձեն արդարացնել այն: Իսկ սուտը սուտ է, և ես չեմ հավատում, որ սուտը կարող է արդարացում ու փրկություն լինել:

Տրամվայում առանց տոմսի երթևեկելը նույնպես գողություն է: Չկա փոքր կամ մեծ գողություն, կա պարզապես գողություն: Չկա մեծ կամ փոքր սուտ, կա պարզապես սուտ, պարզապես խաբեություն: Երբեմն, պատահականորեն, մի պահ հիշում եք աննշան մի դեպք, երբ կարծես անմեղ և չնչին մի հարցում խղճի դեմ գնացիք: Եվ հիշելով այդ, խղճի խայթ եք զգում: Ու հասկանում, որ ձեր չնչին, դատարկ արարքից տուժել է միայն մեկը՝ դուք, ձեր խիղճը, ձեր արժանապատվությունը:

Նորը հակադիր է հնին, թեև գուցե ոչ ամեն մի նոր բան ավելի լավ է հնից: Ինչպես լույսն է հակադրվում խավարին, այնպես էլ բանականությունն ու իմաստությունը՝ տգիտությանն ու անխոհեմությանը: Դա հավերժական հակադրություն է: Եվ եթե շարունակենք համադրությունների կամ, ավելի ճիշտ, հակադրությունների շղթան, ապա այդ շղթայի օղակները պետք է միմյանց կապեն սերն ու ատելությունը, դաժանությունն ու գթասրտությունը, թշնամությունն ու խաղաղությունը, բարեկամությունն ու անբարյացակամությունը, ճշմարտությունն ու սուտը: Այսպիսով՝ ստացվում է, որ մեր ամբողջ կյանքը մշտական պայքար է, որոշակի ուժերի հաղթահարում այլ ուժերի կողմից: Սա հավերժական օրենք է ու, թերևս, եթե չլինեին այսպիսի դարավոր հակադրություններ, գոյություն չէին ունենա ո՛չ կյանք, ո՛չ աշխարհ: Բայց երբ մարդկային հոգիներում խախտվում է այս ուժերի հավասարակշռությունը, հակամարտությունը սրվում է:



Ոմանք վարժվել են երկակի կյանքով ապրել. ասել մի բան, իսկ մտածել ճիշտ հակառակը:

Կես ճշմարտությունը ստի ու կեղծիքի ամենավատ տեսակն է: Կես ճշմարտության մեջ սուտը նմանակում է ճշմարտությանը, քողարկված մասնակի ճշմարտության վահանով:

Պատիվը, օրինավորությունը, խիղճը, մարդկային այն որակներն են, որոնք պետք է նույնքան թանկ գնահատել, որքան և մեր առողջությունը, որովհետև առանց այդ հատկանիշների մարդը դադարում է մարդ լինելուց:

Խղճմտանքի բացակայությունը արտադրությունում դառնում է նյութական, իսկ կուլտուրայի բնագավառում՝ ոչ նյութական վնասի պատճառ, բայց եթե արտադրությունում ինչ-որ կերպ այդ բացթողումը կարելի է «ծածկել», ապա կուլտուրայի ասպարեզում ավելի հաճախ՝ անհնար է:

Վերջերս ես նամակ ստացա մի աշակերտուհուց, որը պատմում էր, թե ինչպես գրականության ուսուցչուհին հանձնարարել է շարադրություն գրել մի շատ հայտնի սովետական գրողի մասին և իր ընկերուհին, գնահատելով գրողի մեծ տաղանդը և նրա դերը գրականության պատմության մեջ, միաժամանակ նշել էր նրա սխալները: Ուսուցչուհին շարադրության այդ մասը համարել էր ավելորդ և հանդիմանել աշակերտուհուն: Եվ ահա նրա ընկերուհին դիմում է ինձ, թե արդյոք կարելի՞ է գրել մեծ մարդկանց սխալների մասին: Ես պատասխանեցի, որ ոչ միայն կարելի է, այլև անհրաժեշտ է, որովհետև մեծության չափանիշը բնավ էլ անսխալականությունը չէ: Ոչ ոք մեր կյանքում, մեր դժվար կյանքում, ազատ չէ սխալներից:

Բայց այս հարցն ունի մի ուրիշ կողմ ևս: Կարո՞ղ է աշակերտը կամ աշակերտուհին հայտնել այնպիսի կարծիք, որը չի համընկնում ուսուցչուհու հայացքների հետ: Ինձ թվում է՝ ուսուցիչը պետք է խրախուսի աշակերտի ինքնուրույն մտածելակերպը: Որովհետև, եթե նա ստիպի թութակի նման կրկնել իր կարծիքները, պատկերացրեք, թե ինչպիսին կլինի տվյալ աշակերտը դպրոցն ավարտելուց հետո, չէ՞ որ կյանքում նա կարող է հանդիպել ուժեղ, բայց անարժան մարդկանց, որոնք հեշտությամբ նրան կներշնչեն իրենց կասկածելի մտքերն ու կարծիքները, նա չի կարողանա հակադրվել ոչ այդ մտքերին, ոչ այդ կարծիքներին, որովհետև զրկված կլինի ինքնուրույն մտածելու կարողությունից: Մինչդեռ սեփական հայացք ունենալը շատ կարևոր է:

Ի՞նչն է կարևոր մարդու համար: Ինչպե՞ս ապրել քեզ շնորհված կյանքը: Նախևառաջ՝ չկատարել այնպիսի արարք, որ ոտնակոխ անի քո արժանապատվությունը: Եթե մարդ իր խղճի դեմ ոչինչ չի անում, ապա հենց թեկուզ դրանով հսկայական օգուտ է տալիս: Իսկ չէ՞ որ կարող են լինել նաև ծանր իրավիճակներ, երբ մարդու առաջ կանգնում է ընտրություն կատարելու պրոբլեմը՝ պատվազրկվել շրջապատի՞ աչքին, թե՞ սեփական: Վստահ եմ, որ ավելի լավ է՝ ուրիշների աչքին, քան՝ սեփական խղճի: Իհարկե, նման զոհաբերությունը հերոսական արարք է: Բայց պետք է քո մեջ ուժ գտնես հասնելու դրան:

Երբ ասում եմ, որ մարդը չպետք է իր խղճի դեմ գործի, չպետք է խղճի հետ գործարքի մեջ մտնի, բնավ նկատի չունեմ, որ նա իրավունք չունի սխալվելու: Ոչ ոք ազատ չէ սխալներից մեր բարդ կյանքում: Բայց այդպիսի մարդուն մի շատ լուրջ վտանգ է սպառնում. նա հուսահատվում է, նրան թվում է, որ բոլորը տականքներ են, բոլորը ստում են: Բանը հասնում է մարդու նկատմամբ ունեցած հավատի կործանման, և ամենասարսափելին սա է: Իմ գործընկերներից մեկը մի անգամ ասաց, որ ոչ ոքի չի հավատում, որ բոլոր մարդիկ խարդախ են: Պարզվեց, որ անցյալում, երբ նա ծանր կարիքի մեջ է եղել, գրասեղանից գողացել էին նրա աշխատավարձը: Ես հասկացա, որ ես էլ չպետք է այլևս հավատամ նրան: Որովհետև այն մարդը, որ հավատում է միայն չարի ուժին, ինքը ևս ընդունակ է ուրիշի սեղանից փող գողանալու:

Ջիջման ճանապարհը կարող է երկար ու դժվարին լինել, բայց ինչքան է մարդուն զարդարում ուժ գտնել իր մեջ՝ ընդունելու և խոստովանելու իր սխալը: Դա զարդարում է ոչ միայն մարդուն, այլև ամբողջ հասարակությանը:

Խղճի տագնապներ... Նրանք հուշում և սովորեցնում են մեզ, օգնում են չըխախտել էթիկայի նորմերը, բարձր պահել արժանապատվությունը, բարոյականությամբ առաջնորդվող մարդու արժանապատվությունը:



Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ԽԱՉԻԿՅԱՆԻ

ՍԻՓԱՆ ՇԻՐԱԶ

# Ալոն ու Զալոն

Ալոն ասաց. արի գնանք,
Զալոն ասաց. արի մնանք՝
Ո՞ւր հեռանանք մեր դաշտերից
Մեր ոսկետունկ անտառներից,
Էս մեր լուսե լճից հեռու
Դու չես գտնի ոչ մի առու,
Ախ, չես գտնի ոչ մի ծաղիկ
Ոչ մի շուշան ու ձնծաղիկ։

Ու մտածեց փոքրիկ Ալոն.
Ճիշտ է ասում եղբայր Զալոն՝
Ո՞ւր հեռանանք մեր դաշտերից,
Մեր ոսկեբաշ անտառներից,
Ո՞ւր հեռանանք, սիրուն հավքեր,
Մենք ո՞նց թողնենք երամը ձեր,
Քեզ ո՞նց լքենք մեր բարի տուն՝
Մեր առավոտ, մեր իրիկուն։

Ուրախացավ եղբայր Զալոն՝
Խելքի եկավ փոքրիկ Ալոն,
Էլ չի գնա նա մեր տնից,
Մեր դաշտերից ու հանդերից,
Մեր այս չքնաղ անտառներից։
Ու թև-թևի տված՝ կրկին
Հյուր կգնան մեր լեռներին,
Մեր այս չքնաղ անտառներին,
Մեր խաղընկեր փոքրիկ Ալոն
Եվ իր եղբայր խելոք Զալոն։

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

Ափսոս, որ չիմացա այն փոքրիկ հընդիկի անունը։ Բայց ոչինչ, եկեք նրան անվանենք Ռաջ։ Ռաջ նշանակում է հարուստ, առաջնորդ, նաև՝ իշխան։ Թե ինչո՞ւ եմ առաջարկում այդ փառահեղ անունը փոքրիկ հնդիկ տղայի համար՝ կիմանաք հետո։

... Փետրվարի վերջն էր, Դելիում այն աստիճան շոգ էր, որ հայաստանցի զբոսաշրջիկներս արդեն չէինք դիմանում. անհնար էր շնչել, քամու ծվեն իսկ չկար օդում, իսկ տանջող ծարավի դեմ զովացուցիչ ջրերը ի զորու էին կովել մի քանի րոպե ընդամենը... Մեզ մնում էր տոկալ ու սփոփվել Արագածի անուշ քամիների ու երևանյան աննման ջրի հիշողությամբ, ապա՝ ապրել Հնդկաստանի սքանչելի ճարտարապետությամբ, ժողովրդի նիստ ու կացով, արվեստներով, տաճարներով ու քանդակներով, որոնցով լցված է երկիրն ամբողջությամբ։ Ամեն րոպե մեր աչքերը շոյվում էին տարաշխարհիկ այդ գեղեցկություններով։

Հնդկաստան։ Հիմա, այցելությունից տարիներ անց, երբ փորձում եմ վերապրել այդ երկրում տեսածս ու զգացածս, ամենից առաջ աչքերիս դեմ հայտնվում են երեխաները, հազարավոր-հազարավոր այն երեխաները, որոնք անդադար շարժման մեջ էին, ինչ-որ բաներ էին տանում-բերում, վաճառում, մաքրում, եփում, ավլում, լվանում... Ամեն մեկը մի բախտ էր ու մի ճակատագիր, թեև այնքան նման էին իրար արտաքուստ՝ սև ու թուխ մաշկ, աչքեր՝ պարզ ու մեղմ արտահայտությամբ, նիհար ուսեր և բարակ թևեր, ինչպես աշխարհի բոլոր երեխաները, որոնց երբեմն հեշտորեն հասկանում ես, իսկ հաճախ՝ մնում են առեղծված։

Մի օր Դելիի Կարմիր ամրոցի հրապարակում, երբ մարդկային խայտաբղետ հոսանքին խառնված անկանոն գնում էր մեր խումբը, դեմս կանգնեց մի փոքրիկ տղա։ Կլիներ վեց-յոթ տարեկան։ Վզից կախված էր փայտե մի կոպիտ սպասք՝ վրան կոշիկ մաքրելու պարագաներ։ Տղան ամբողջովին կորած էր փոշու և կեղտի մեջ, մազերը կոշտացել, կպել էին գլխին։ Նա, այսինքն՝ մեր Ռաջ կոչած տղան, իր խորունկ աչքերը հառեց դեմքիս։ Մեկ վայրկյան անց նա դարձավ գործնական, առաջարկեց մաքրել կոշիկներս, իսկ ես իր աշխատանքի դիմաց պետք է տայի մի օճառ։ Իմ կոշիկներն,



# Փոքրիկ հնդիկն ու մեծ հպարտությունը

ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

իհարկե, հանգամանալի մաքրելու կարիք չկար: Երկրորդ՝ օճառ չկար մոտս: Եվ երրորդ՝ ես երբեք թույլ չէի տա այդ պստլիկ տղան կոանար, կոշիկներս մաքրեր:

Ռաջը պնդեց իր պայմանը: Հասկացրեց, որ իր համար օճառը հացից թանկ է: Ես համոզվեցի, որովհետև երբ թխվածք առաջարկեցի՝ հրաժարվեց: Հրաժարվեց նաև մատիտներից, կրծքանշանից, ծամոնից: Ոչինչ նրան չէր հետաքրքրում: Խորունկ հայացքը հառած վրաս՝ աղերսում էր՝ ցույց տալով կեղտի մեջ կորած իր մարմինը... Երևում էր՝ երկար ժամանակ չէր լողացել, գուցե ամիսներ օճառ չէր դիպել նրա մաշկին: Եթե լիներ, ես միլիոն հատ օճառ կնվիրեի Ռաջին ու իր նման տղաներին, որ փութով շրջապատել և անհանգիստ շարժումներով հետևում էին մեզ՝ ինձ և Ռաջին, ու հավատացած, որ իրենց ընկերը հաջողություն կունենա, խրախուսում էին նրան ավելի համառելու: Ես ի՞նչ անեի: Ռաջը՝ մի ձեռքին քուք, մյուսին՝ խոզանակ, աչքերում՝ խորին թախանձանք, արդեն նոանում էր: Ես խուսափում էի: Նա գալիս էր դեպի ինձ՝ մանուկների ամբոխը հետը: Իսկ ես չէի կարող փախչել, անհարմար էր, նույնիսկ ամոթ՝ այդ պստլիկ տղայի առաջ: Ծրջմոլիկ տղաների օղակըն ինձ հասցրեց մինչև մեր ավտոբուսը: Ռաջը առաջանում էր կռացած, ես

հետ-հետ էի գնում՝ չդիմանալով նրա համառությանը:

Մեջքով զգացի ավտոբուսի բաց դուռը: Եվս կես քայլ՝ ու կհայտնվեի ավտոբուսում: Այդ պահին հայացքս առավ Ռաջի աչքերին: Նրա համառությունը, ասես կոտրված էր, խեղճացած, կիսակոր մեջքով կանգնել էր առջևս:

Ես գիտեի, որ ամենահամառ տղաները իսկ ավտոբուսի դռնից ներս չէին անցնի, և պարզ էր՝ եթե ես կատարեի այդ կես քայլը, ուրեմն՝ Ռաջի համար կորչելու էր օձառ ունենալու երանելի հեռանկարը: Անելանելի վիճակ էր: Ինչպե՞ս օգնեի այդ փոքրիկ տղային: Ծուռ եկա, դիմեցի ավտոբուսում նստածներին, թե որևէ մեկի մոտ չի՞ ճարվի արդյոք մի հատիկ օձառ: Բարեբախտաբար մեկը ուներ: Ես այն փութով դրեցի Ռաջի հուզմունքից ցնցվող ափի մեջ ու ինձ գցեցի ավտոբուս: Մանուկների խումբը ավտոբուսն առել էր աքցանի մեջ: Ոգևորված Ռաջի հաջողությունից՝ ամեն մեկն ուզում էր իր բախտը փորձել: Մեծ աղմուկի մեջ լսվում էր Ռաջի բարակ ճիչը. նա ինձ էր կանչում, տեսնում էի նրա մրի պես սև թաթը՝ օձառը ամուր սեղմած, իմ կողմը թափահարելիս: Մտածում էի՝ այլևս ի՞նչ է ուզում այդ տղան, ես կատարեցի նրա ցանկությունը... Վայրկյան անց Ռաջը ճեղքել էր տղաների օղակը, հայտնվել էր ամենաառջևում: Նա պահանջում էր, որ ես անպատճառ իջնեմ, որպեսզի մաքրի կոշիկներս: Ես, այնուամենայնիվ, մեջս ուժ չէի գտնում ոտքս պարզելու այդ պստլիկ տղային: «Ոչ մի դեպքում,— ասում էի ինձ,— ոչ մի դեպքում, չեմ կարող»: Ռաջը արդեն աղերսում էր: Իսկ երբ վարորդը գործի գցեց շարժիչը, նա սկսեց հոնգուր-հոնգուր լաց լինել: «Ոչինչ,— մտածեցի,— ավտոբուսը կհեռանա, ինքն էլ կխաղաղվի»:

Դռները փակվեցին, ու մենք դանդաղ ընթացքով դուրս եկանք մայրուղի:

Տղաները մնացին ետևում, միայն Ռաջըն էր վազում ավտոբուսի կողքից՝ արցունքների միջից ինչ-որ անհասկանալի, խեղդված բառեր արտաբերելով:

Երբ արդեն մայրուղում էինք, նա պատուհանից ներս շպրտեց օձառը...

Ափսոս, որ չիմացա այն փոքրիկ հնդիկի անունը: Բայց ոչինչ, մենք նրան անվանեցինք Ռաջ: Ռաջ նշանակում է հարուստ, առաջնորդ, նաև՝ իշխան...

# ՕԼԻՄՊԻԱԿԱՆԸ ԼԵՌՆԱԿԱՆԻՑ



Տաշքենդի «Հոբելյանական» մարզապալատում հավաքված մարզասերները ջերմ բացականչություններով ու ծափերով ուղեկցեցին ռինգը հաղթանակով թողած հայ բռնցքամարտիկին: Իսկ եզրափակիչ մարտը լենինգրադցի Սերգեյ Արտեմևի հետ այնքան էլ հեշտ չէր: Բարձրահասակ ու փորձառու մրցակիցն Մեխակն առաջարկեց տեմպային պայքար և մերձամարտում անվիճելի առավելության հասնելով, կրկին նվաճեց երկրի չեմպիոնի կոչումը:

Նրանց տունը հին Լենինականը հիշեցնող նեղ փողոցներից մեկում է ծվարած, նորօրյա բազմահարկ շենքերի արանքում: Դուռը բացեց հայրը, և մեր



նախնիների սովորությամբ՝ չհարցնելով ով լինելս ու այցելությանս նպատակը, ներս հրավիրեց: Վարպետ Հայկազը, որին, ինչպես հետո պարզվեց, իր տղաները էլ հաճախ այդպես հարգանքով են դիմում, խոսքաշեն մարդ է ու գիտե զրույցի «քուրան» վառ պահելու արվեստը:

... Չորս որդիներն էլ՝ Սարգիսը, Սմբատը, Գրիշան ու Մեխակը պարապել են բռնցքամարտով:

«Տնական» պայմաններում առաջին անգամ էի տեսնում Մեխակին. անկեղծ ասած՝ փոքր-ինչ հիասթափվեցի: Շատ սովորական, տղայական արտաքին ուներ և փողոցում գլխի չէիր ընկնի նրա ով լինելը: Իսկ կապույտ էկրանի վրա բոլորովին ուրիշ է...

Նրա նվաճումներն ու մեդալները ինձ այնքան էլ չէին հետաքրքրում, (դրանք կարելի է իմանալ և մամուլից), որքան ինքը՝ մեդալների տերը իր մտածելակերպով, աշխարհայացքով ու հոգեբանությամբ: Մեխակն ինձ կաշառեց առաջին հերթին իր անկեղծությամբ, նաև ծնողների նկատմամբ տածած ակնածալի հարգանքով.

«... Մայրս առանձնահատուկ կին է: Տասը տարեկանում որբացել է, իսկ 14-ից սկսած մինչև կենսաթոշակի անցնելը աշխատել է Լենինականի տեքստիլ կոմբինատում որպես բանվորուհի: Լենինի շքանշանակիր է: Իմ մեդալները նրա ունեցածի համեմատությամբ ի՞նչ են որ... Հայրս էլ մորս ճակատագիրն է ունեցել:

Նա 13 տարեկանից մինչև օրս աշխատում է երկաթուղային դեպոյում: Նրանք ոչինչ չեն խնայել մեզ համար»:

Որ Մեխակը կտրուկ է իր դատողություններում ու անաչառ՝ դժվար չէ համոզվել.

«Չեմ սիրում, երբ ճանաչված մարզիկներին զարդարում են չունեցած բարեմասնություններով, ոսկեզօծում, հաղթական ժպիտների ետևում չտեսնելով ամենօրյա ծանր գործ կատարող աշխատավորին՝ իր թերություններով ու թուլություններով»:

Մեխակը չի ձգտում բարձրացնել հաղթանակների գինը, «վերևից» չի նայում պարտված հակառակորդներին և զուսպ է իր հնարավորությունների մասին խոսելիս.

«Բռնցքամարտը շատ «նենգ» մարզաձև է: Մի պատահական հարվածը կարող է վճռել մարտի ելքը: Բնականաբար՝ զգոնությունը չպետք է թուլացնել ոչ մի վայրկյան: Մեծ սպորտում պատահականություններ քիչ են լինում, իսկ եթե լինում են, անպայման բացատրություն ունեն:

Ես երբեք մարտից առաջ չեմ ասում՝ կհաղթեմ: Երբեմն ինձ մեղադրում են անվստահության համար:

— Քո համեմատությամբ նա ի՞նչ մրցակից է որ, իսկ դու…

Իսկ ես ասում եմ՝ տեսնենք, կաշխատեմ հաղթել:

Հրաշալի մի բռնցքամարտիկ կա Թբիլիսիում՝ Ալբերտ Ղազանչյան: Չափից ավելի ինքնավստահ է: «Կհաղթեմ,— ասում է,— իմ դեմ խաղ չկա»: Ինչ ասես, սա էլ հոգեբանություն է, որ երևի օգնում է նրան: Ինչ էլ որ լինի, ես չեմ սիրում նման բաներ…»:

Մեխակը երեխայական անմիջականությամբ պատմում էր Եվրոպայի վերջին առաջնության օրերին իր հուզախռով հոգեվիճակի մասին, նրա ապրումները փոխանցվում էին ինձ, ու ինքս էլ ասես շնչում էի Իտալիայի «շիկացած» օդը:

«Ինձ ու ինձ հաշվում էի լենինականցի Եվրոպայի չեմպիոններին: Քիչ չեն: Եվ ահա երազանքս իրագործելու հնարավորություն էր ստեղծվել:— Եթե պարտվես,— ասում էի ինձ,— վերջ քո մարզական վերելքին, քեզ այլևս չեն հավատա: Կամ ինչ երեսով պիտի երևաս քաղաքում:

Գիշերները առանձնապես տառապալից էին:

— Աստված չանի,— տնքում էր ուղեղս,— եթե պարտվեմ, ի՞նչ կասի ավագ ընկերս՝ Սամսոն Խաչատրյանը: Չի՞ ասի՝ Մեխակ, էս ի՞նչ արիր…

Աշխարհի չեմպիոն Բենքսին եմ հաղթել, Եվրոպայի չեմպիոն Նուրկազովին… ինչքան խութ ու արգելք եմ հաղթահարել, մինչև եկել հասել եմ այստեղ…»:

Մեխակն իր հաղթանակների մասին խոսելիս ավելի շատ պատմում է ուրիշների մասին:

«Մրցումների նախօրեին մարզվում էի ինքնամոռաց, մի տեսակ կատաղի մոլուցքով: Շնորհակալ եմ հավաքականի մարզիչ Ռաֆայել Մեհրաբյանին: Ինձ քառացիորեն վռնդում էր դահլիճից: Հանդերձարանի ճանապարհին ես «մոռանում էի» հրահանգը ու սկսում էի օդում հարվածների տարափ տեղալ:

— Քեզ ի՞նչ ասվեց,— Մեհրաբյանի ձայնը խիստ էր, հայրական:

Նա շատ բան արեց, որ ես մրցումներից առաջ «չվառվեմ»:

Հավաքականում էլի մեկ հայ կար, և նա էլ շատ օգնեց ինձ: Նշան Մունչյանն էր: Շատ խելացի տղա է Նշանը, հազվադեպ անշահախնդիր ընկեր: Շնորհակալ եմ և նրան՝ իր կարևոր խորհուրդների համար»:

Ասենք, որ Մեխակի անփոխարինելի մարզիչը իր ավագ եղբայրն է՝ Սարգիսը:

«Մարտի ժամանակ շատ մարզիկների նման ես չեմ «անջատվում»: Լսում եմ բղավոցները՝ եթե դրանք նույնիսկ դահլիճի ամենահեռավոր շարքերից են: Եղբայրս միայն «Բարի կամքի» խաղերի ժամանակ է իմ մարտավկան եղել, մյուս դեպքերում, եթե հուշելու կարիք է զգացվել՝ միայն դահլիճի խորքից:

Խաղերից առաջ Սարգիսը խոսք բացեց, թե՝ լավ կլինի մերոնք գան, նայեն ելույթս:

— Չէ,— ասացի,— պիտի խառնվեմ, թող չգան:

Նուրկազովի հետ մարտը շահելուց հետո, երբ ձեռքս վեր բարձրացրին, հարյուրավոր բղավոցների մեջ մեկի ձայնը շատ ծանոթ թվաց: Երբ իջանք ռինգից, եղբորս ասացի.

— Սարգիս, Գրիշիկը դահլիճում է…»:

Նա չի շրջանցում իր պարտությունները, պատճառներ չի փնտրում դրանք արդարացնելու համար, հիշաչար չէ մեղան-

չած մրցավարների նկատմամբ: Մեխակը զուրկ չէ հումորից և առիթը բաց չի թողնում ծաղրելու իր այս կամ այն թեթևամիտ արարքը.

«1986-ին Ինդոնեզիայի միջազգային մրցաշարի ավարտից հետո (գրավեցի 2-րդ տեղը) ՍՍՀՄ հավաքականի ավագ մարզիչ Արտյոմ Լավրովը տղաներին ազատեց հաշված օրեր հետո տեղի ունենալիք ՍՍՀՄ առաջնությունից: Իսկ ես խնդրեցի թույլ տալ ինձ մասնակցելու: Նա քթի տակ ժպտաց՝ խորհուրդ չեմ տալիս:

Ես լավ մարզավիճակում էի և թերևս ուզում էի ապացուցել, որ ինձ դեռ լավ չեն ճանաչում...

Տանը եղբայրս էլ իր հերթին «խրատ» կարդաց, փորձեց համոզել, որ անիմաստ է արածս, մանավանդ որ վերադարձի ճանապարհին ձգձգումներ են եղել և որ կլիմայափոխումը բոլորովին էլ երկրորդական բան չէ: Բայց սատանան մտել էր մեջս, որոշել էի ցուցադրել հնարավորություններս: Ասում են՝ կարկուտը ծեծած տեղն է խփում: 40 աստիճան շոգից մի քանի ժամ հետո տեղափոխվել 20 աստիճան ցուրտ գոտի և մարտ վարել ճանաչված մարզիկների հետ, այնքան էլ լուրջ չէ: Հոգնած-ջարդված էի զգում ինձ, ձեռնոցները վառում էին: Հենց առաջին մարտի վերջում սկսեցի քաշկռտվել, ինչպես ասում են՝ «կովել»: Մրցավարները 3:2 հաշվով հաղթանակը շնորհեցին Խամուտովին (ի դեպ, 87-ին ՍՍՀՄ առաջնության եզրափակիչում մենք կրկին հանդիպեցինք, և ես «վրեժս» լուծեցի):

Պարտությունը անգնահատելի դաս եղավ ինձ համար: Ես հասկացա, որ իսկական մարզիկ դառնալու համար կարևոր է նաև ուժերը խելամիտ, նպատակաուղղված ծախսել, պատասխանատվությամբ վերաբերվել յուրաքանչյուր ելույթին»:

Ինչպես յուրաքանչյուր մարզիկ, Մեխակ Ղազարյանը նույնպես երազում է նվաճել մարզական ամենաբարձր գագաթը՝ օլիմպիականը: Իսկ Սեուլում կայանալիք ամառային 24-րդ օլիմպիադային հաշվված օրեր են մնում:

«Անչափ դժվար կլինի Սեուլում: «Խաղերում» առհասարակ թույլ մրցակիցներ չեն լինում: Ամեն ինչ կանեմ կրկնելու աշխարհահռչակ Վլադիմիր Ենգիբարյանի օլիմպիական հաջողությունը»:

Սպասենք և հուսանք:






XVII դարի կեսերին աշխարհում շատ թագավորներ կային, և նրանցից ամեն մեկը մի սևեռուն հոգս ուներ: Մեկը ձըգտում էր գրավել հարևան երկիրը, մյուսը՝ կերակուրներ ճաշակել, երրորդը՝ շքեղ հագնվել: Անգլիայի թագավոր Չարլզ I-ին ամենից շատ հուզում էր իր կյանքը երկարացնելու պրոբլեմը:

— Պետք է մեր երկրի տարածքում փնտրել ամենածեր մարդուն և պարզել, թե ինչպես է նա այդքան երկար ապրել,— խորհուրդ տվեցին մինիստրները:

Եվ ահա 1635 թվականին թագավորության բոլոր ծայրերը սուրհանդակներ սուրացին՝ գտնելու Անգլիայի ամենածեր մարդուն: Շրոպշիրում նրանք մի աղքատ գյուղացու գտան՝ Թոմաս Փարր անունով, որը 152 տարեկան էր: Նրան պալատ բերեցին, որպեսզի թագավորն ինքն անձամբ տեսնի և ուսումնասիրի, «երկարակեցության այդ հրաշքը», մոտիկից իմանա նրա կյանքի «գաղտնիքները»:

Իսկ Փարրը հեշտ կյանք չէր ունեցել: Ընտանիքը կերակրելու և նրա պետքերը հոգալու համար փոքր հասակից մինչև խոր ծերություն աշխատել էր դաշտում: Անբերրիության տարիներ էին լինում, և նա հաճախ քաղցած էր մնում: Լավ տարիներին էլ նրա կերակուրը կոշտ հացից, շիլայից, կաթ ու պանրից էր բաղկացած:

Փարրը ընտանիքով և անասուններով բնակվում էր փոքր, գերանակապ խըրճիթում, որտեղ անձրևի ժամանակ խոնավ էր, սառնամանիքի ժամանակ՝ ցուրտ: Սակայն, քաղցից ու ցրտից ավելի դժընդակ էին ծաղիկ, խոլերա, ժանտախտ հիվանդությունները, որոնք տարան Փարրի համարյա բոլոր զավակներին:

Փարրը, որպես հասարակ զինվոր, մասնակցել էր շատ պատերազմների, մի քանի անգամ վիրավորվել էր, առողջացել ու նորից անցել գյուղացու ծանր աշխատանքին: Այդպես էր ապրել մինչև 152 տարեկան դառնալը:

Պալատում ծերուկին հարգանքով և ուշադրությամբ շրջապատեցին: Որպես ցուցադրանմուշ հանդես գալով պալատական ընդունելությունների ժամանակ, օրեր անցկացնելով նախաճաշերի, ճաշերի և ընթրիքների սեղանների շուրջ, նա երեք ամիս հետո... մահացավ: Պալատական բժիշկները, քննելով մեռածին, եկան այն եզրակացության, որ «մահվան պատճառը ապրելաձևի փոփոխությունն էր»: Եթե նրան պալատ չբերեին, հնարավոր է նա իր 200-ամյակը նշեր: Զարմանալի տոկունություն ձեռք բերած նրա օրգանիզմը դիմացել էր քաղցին ու ցըրտին, ծանր աշխատանքին, տարերային աղետներին, համաճարակներին ու պատերազմներին... Միայն անգործությունն ու շատակերությունը կարողացել էին կոտրել նրան:

Այն ժամանակներից, երբ մարդիկ առօրյա աշխատանքում և կենցաղում սկսեցին մեքենաներ օգտագործել, դրանք շարժման մեջ դնելու համար օրեցօր վառելանյութի ավելի մեծ կարիք զգացվեց: Սկզբում շոգեմեքենաները, շոգեքարշերը և շոգենավերը շարժման մեջ դնելու համար դրանց կաթսաների հնոցներում փայտ էին այրում: Բայց ահա անցյալ դարի վերջերին փայտի պաշարները ըսպառվեցին: Եվրոպայում համարյա անտառ չմնաց: Ստիպված սկսեցին քարածուխ օգտագործել: Իսկ մեր ժամանակներում դրան ավելացան նավ գազը, նավթը և ուրանը:

Սակայն քարածխի, նավթի և ուրանի պաշարները ևս երկրագնդի վրա անվերջանալի չեն: Դրանք արդեն սպառման եզրին են: Գազը և նավթը կհերիքեն դեռ մի քսան-երեսուն տարի, իսկ քարածխի և ուրանի պաշարները, ասենք՝ մինչև հարյուր տարի: Իսկ ի՞նչ կլինի հետո:

Բոլոր բարդ մեքենաները, որոնք մեր կյանքն այդքան հարմարավետ են դարձնում, առանց էներգիայի կկանգնեն, և մարդիկ ստիպված կլինեն, ինչպես քարե դարում, հույսը դնել սեփական մկանների վրա: Որպեսզի դա տեղի չունենա, գիտնականները նախապես էներգիայի նոր աղբյուրներ են որոնում: Այդպիսիք կդառնան ջերմամիջուկային էլեկտրա-

կայանները: Դրանցում էներգիան ստաց-վելու է ջերմամիջուկային ռեակցիաների միջոցով: Այդ ռեակցիաների ժամանակ միջուկները ոչ թե ճեղքվում, այլ միաձուլ-վում են: Այդպիսի ռեակցիաներ են տեղի ունենում Արեգակի վրա: Դրանք էլ հենց նրան այդպիսի ջերմություն են հաղոր-դում:

Ջերմամիջուկային էլեկտրակայանների համար վառելանյութ են ծառայելու հե-լիումի և ջրածնի իզոտոպների խառնուր-դը՝ դեյտրին, հելիում—3-ը: Վառելանյու-թի մի մասնիկը՝ դեյտրին, սովորական ջրածնի հետ ջրի կազմի մեջ է մտնում: Ջրի քանակը ծովերում և օվկիանոսնե-րում այնքան շատ է, որ նրա մեջ պարու-նակվող դեյտրին կհերիքի միլիոնավոր տարիներ: Իսկ հելիում—3-ի գործը բարդ է: Երկրագնդի վրա այն համարյա չի հանդիպում: Դրա փոխարեն հելիում—3 լիուլի կա Լուսնի, Յուպիտերի, Սատուր-նի և Նեպտունի վրա:

Լուսնի վրա հելիում—3-ը ընկնում է ա-րեգակնային քամու միջոցով: Այդպես են կոչում Արեգակի բռնկումներից արտահո-սող գազը: Արեգակնային քամին Երկիր էլ է հասնում: Բայց մթնոլորտի վերին շերտերը գազն իրենց մեջ են պահում, և մենք այն հայտնաբերում ենք միայն բևեռափայլերով: Իսկ Լուսինը այդպիսի մթնոլորտ չունի: Արեգակնային քամու բերած գազի մասնիկները Լուսնի բնա-հողը կլանում և կուտակում են: Երբ սո-վետական լուսագնացները Լուսնի բնա-հող բերեցին Երկիր, պինդ մարմինների մեջ նաև ջրածնի և հելիումի գազի մաս-նիկներ հայտնաբերվեցին:

Լուսնի բնահողը մեկ միլիոն տոննա հելիում—3 է պարունակում: Դա երկրի վրա էներգիա արտադրելու համար հա-զարավոր տարիներ կբավականացնի:

Սակայն չափազանց թանկ չի՞ նստի արդյոք Լուսնից վառելանյութ հայթայթե-լը: Պարզվում է, որ ոչ: Բուլդոզերներ և էքսկավատորներ Լուսին առաքելու, Լուս-նի բնահողից հելիում—3 ստանալու նը-պատակով գործարան կառուցելու և այն Երկիր հասցնելու համար 250 անգամ ա-վելի քիչ էներգիա կծախսվի, քան եթե լուսնային հելիում—3 ստացվի Երկրի ջերմամիջուկային էլեկտրակայաններում:

Եթե Լուսնից մի ուղերթով, ասենք 30 տոննա հելիում—3 բերվի, այն ամբողջ Երկրի էներգիայի պահանջը կբավարա-րի մի քանի ամիս: Ավելի մեծ են հե-լիում—3-ի պաշարները Արեգակնային համակարգության մոլորակների վրա: Թռիր և բեր ինչքան կուզես: Երկիրը վա-ռելանյութով կապահովվի միլիոնավոր տարիներ:

Ե՞րբ կգա այդ հիանալի ժամանակը: Հավանաբար հաջորդ՝ 21-րդ դարի հենց սկզբում: Սակայն մինչ այդ անհրաժեշտ է «բորբոքել» դեյտրիի և հելիում—3-ի ռեակցիան, որը միայն 800 միլիոն աս-տիճանի դեպքում է սկսվում, հնարել և կառուցել տասնյակ անգամ ավելի հզոր հրթիռներ, քան մինչև այսօր եղածները, թռչել մինչև հեռավոր մոլորակները...

Եթե ձեզ ասեն, որ երկիրը գնդաձև է, չհավատաք, մենք բոլորս ապրում ենք հսկայական խնձորի վրա, այն էլ մի քա-նի տեղից մեծ կտորներով կծած:

Ծվեյցարական և արևմտագերմանա-կան հետազոտողները, որոշեցին ման-րամասն կերպով չափել մեր մոլորակը: Կոսմիկական արբանյակները ընդունում և անդրադարձնում են Երկրի լազերնե-րից իրենց վրա ուղղված ճառագայթնե-րը: Ժամանակակից սարքերը ճշգրտորեն չափում են լազերային ճառագայթի՝ մին-չև արբանյակը հասնելու ժամանակը և այդ ճանապարհի երկարությունը: Այս-պիսով, արբանյակը իր համար պտտվում է Երկրի շուրջը, իսկ գիտնականները Երկրի վրա ամեն վայրկյան կարողանում են ճշգրտորեն որոշել նրա հեռանալը մոլո-րակի մակերևույթից:

Սովորաբար արբանյակները Երկրի շուրջը պտտվում են էլիպս հիշեցնող ու-ղեծրերով: Բայց լազերի օգնությամբ մանրամասն չափումներով պարզվեց, որ երբեմն արբանյակները կարող են շեղ-վել իրենց ուղեծրերից և փոքր-ինչ ա-վելի մոտենալ Երկրին, եթե այդ տեղե-րում խորություններ կան (խնձորից մի կտոր կծել-պոկել են) կամ էլ հեռանալ՝ եթե «կուզ» հանդիպի: Երբ ստացված չափումներով մի ընդհանուր պատկեր կազմեցին, այսինքն՝ ստեղծվեց Երկրի քանդակային պատկերը, պարզվեց, որ մեր մոլորակի մակերևույթը ամբողջովին ակոսված է խորշերով և «սապատնե-րով»: Ամենամեծ «սապատը» Իսլանդիա-յի շրջանում է հայտնաբերված: Գիտնա-կանների կարծիքով ծովի մակերևույթն այնտեղ 65 մետրով բարձր է, քան Ատ-լանտյանի կենտրոնում: Այնպես որ, այս-տեղից ոչ թե գնդի, այլ ուրիշ հոտ է փչում՝ «խնձորի»: Երկիրը խնձոր է:

# «ԽՈՐԱՄԱՆԿ ՊԱՏԱՀԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ» ԳԻՏՈՒԹՅԱՆ ՄԵՋ

ԱՍԱՏՈՒՐ ՓԱՇԱՅԱՆ

Շատերի կարծիքով բոլոր մեծ գյուտերն ու հայտնագործությունները արվել են երջանիկ պատահականությամբ, երջանիկ ոգեշնչմամբ: Եվ որպես վառ օրինակ՝ նշում են Նյուտոնի հռչակավոր խնձորը: Իբր թե միայն ծառից ընկած խնձորի շնորհիվ Նյուտոնը հայտնագործեց տիեզերական ձգողականության օրենքը:

Եթե թերթենք հայտնագործությունների և գյուտերի մասին հին գրքերն ու ձեռագրերը, կհանդիպենք այսպիսի արտահայտության. «Դիպվածն օգնեց ինձ...», և դրան հետևում է հայտնագործության և գյուտի նկարագրությունը:

Կամուրջներ կառուցող ինժեներ Բրոունը իր պատշգամբում տքնում էր Տվիդ գետի վրա կառուցվող կամրջի նախագծի վրա: Առջևում դրված թուղթը մաքուր էր, աշխատանքը չէր ստացվում: Հուսահատված Բրոունը թողեց գծագրական տախտակը և գնաց այգում թարմանալու: Ամռան վերջն էր: Արևի տակ փայլփլող սարդոստայնի կպչուն թելերը խճճվում էին թփերում, շարժվում քամու ուղղությամբ: Բրոունը հեռացնում էր դրանք դեմքի վրայից: Այգում սարդը ոստայն է հյուսել ուրեմն: Բրոունը թեք ընկավ թփերում, բայց անմիջապես վեր թռավ՝ աչքերը թարթելով: Երկնքի կապույտ ֆոնի վրա տեսավ արծաթավուն մի պարզ գծագիր: Զարմանալի թեթև, հասարակ ու համարձակ՝ փոքրիկ կամուրջը փայլում էր ճյուղերի վրա: Դա կամուրջ էր, ոչ թե սարդոստայն: Քամին տարուբերում էր ճյուղերը, բայց սարդոստայնը չէր կտրվում: Եվ որքան ուշադիր էր Բրոունը նայում այդ սարդոստայնին, այնքան ավելի շատ էին երկարում առաձգական թելերը: Եվ արդեն ոչ թե՛ թույլ ճյուղերն էին ձգում սարդոստայնը, այլ գորշ ժայռերն էին պահում երկաթե կամուրջը, ժանգոտ շղթաները տարուբերվում էին կիրճի վրա:

Այժմ Բրոունն արդեն գիտեր, թե ինչից պետք է սկսի և ինչի պիտի ձգտի: Նա նորից նստեց գծելու և հաշվելու: Գյուտը արված էր. նա սկսեց կառուցել կախովի կամուրջներ՝ առանց թանկ ու բարդ խարիսխների, որոնց վրա էին հենվում կամուրջները: Քանի՜-քանի՜ անգամ ենք մենք կպել սարդոստայնին... իսկ Բրոունը նկատեց. մի աննշան բանից մեծ գաղափար հղացավ:

1823 թվականին շոտլանդացի ինժեներ Մակինտոշը Գլազգոյում կազմակերպեց անջրանցիկ թիկնոցների արտադրություն: Սակայն շուտով գնորդները հիասթափվեցին: Կաուչուկի խառնուրդով կտորը արևի շոգից փափկում էր և դառնում կպչուն, իսկ ցրտից կոշտանում, դառնում դժվարաշարժ, և ծալված մասերը հեշտ կոտրվում էին: Ձեռնարկատերերի համար ստեղծվեց դժվար կացություն: Հարկավոր էր գտնել այնպիսի խառնուրդ, որն ունենար կաուչուկի կպչունությունն ու շուտ չորանալու հատկությունը: Տարբեր արհեստի և ըզբաղմունքի մարդիկ սկսեցին մտածել այդ մասին: Փորձերը երկար ժամանակ անցնում էին ապարդյուն:

Գուդյիր անունով մեկը, որը ոչ մի կապ չուներ քիմիայի հետ, կաուչուկին խառնեց տարբեր քիմիական նյութեր և նմուշները դրեց արևի տակ: Հանկարծ նկատեց, որ ծծմբի հետ խառնված նմուշը լրիվ կորցրել է կպչելու հատկությունը: Նա իր վերջին միջոցներով ձեռք բերեց կաուչուկ և փորձեր կատարեց ծծմբի հետ: 1839 թվա-



կանինն նա եկավ այն եզրակացության, որ կանուչուկը ծծմբի հետ տաքացնելիս, հատկապես կապարի միացությունների ներկայությամբ, վեր է ածվում ամուր, առաձգական, ջերմակայուն ու ցրտակայուն, չկպչող զանգվածի: Այդ պրոցեսը ներկայումս անվանում են կաուչուկի վուլկանացում:

Ասում են, որ Արքիմեդի գլխում իր հռչակավոր օրենքը ծագել է լոգարանում, և այնպես է ցնծել, որ տկլոր դուրս է թռել փողոց ու կանչել՝ «Էվրիկա»-«Գտա՛»:

Մոտ տասնհինգ տարի առաջ ակադեմիական մի ամսագրում օճառի գյուտի այսպիսի պատմություն է արվել: Հնում, տոնական օրերին, մարդիկ իրենց մազերն իբր օծում էին անուշահոտ յուղերով: Այդ օրերին մոխիր էին լցնում գլուխներին: Եվ մարդու մազերի վրա նստում ու միանում էին ճարպն ու մոխիրը՝ օճառի այդ երկու անհրաժեշտ բաղադրամասերը:

Մեր թվարկության առաջին դարի հույն բնագետ Պլինիուսը հավատացնում էր, որ ապակու գյուտարարը իր գործիքը գտել է պատահական վիճակում՝ ծովափին զբոսնելիս: Իբր թե այնտեղ ընկած է եղել մեծ ատամնավոր ձկան մի ծնոտ, և այդ ծնոտի օրինակով է ստեղծել սղոցը: Պլինիուսը երբեք չէր կարող մտածել, որ այնպիսի նշանավոր անձնավորություն, ինչպիսին սղոցի գյուտարարն էր, երբևէ աշխատել է: Նրա ժամանակ ֆիզիկական աշխատանքը համարվում էր ամոթալի և վիճակված էր միայն ստրուկներին, իսկ ազատ մարդկանց վայել զբաղմունքը համարվում էր խորհրդածությունն ու հայեցողությունը, և, իհարկե, մեծ հայտնագործությունները, ըստ Պլինիուսի, ազատ մարդիկ կատարում էին հայեցողական ճանապարհով՝ չկեղտոտելով ձեռքերը: Այդպիսի մածելակերպի հետ պետք է հաշվի նստել, երբ կարդում ես հայտնագործությունների պատմությունը:

Մարդիկ իսկապես շատ բան սովորել են բնությունից, շատ բան փոխ առել, միայն թե այդ արել են, հավանաբար, այլ կերպ: Պատկերացնենք, որ հին քարայրում աշխատում է նախնադարյան զինագործ-քարտաշը: Նա կայծքարից կացին է տաշում:

Աշխատանքը, ինչ խոսք, ծանր է: Զինագործը ջանում է և այնպիսի եռանդով է քարը քարին խփում, որ կայծեր են թռչում չորս կողմը: Կայծը ընկնում է կտորի կամ չոր խոտի վրա և առաջացնում կրակ, ծուխ: Ահա ձեզ նախնադարյան հրահան:

Ուրիշ մի օրինակ:

Նստած է նախնադարյան վարպետը, ծակում է փայտյա ինչ-որ բան: Նրա ձեռքում ծակիչն է՝ նետ ու աղեղի նման, աղեղով պըրկված: Նետ-ծակիչը պտտվում է: Մատով վարպետը ստուգում է ծակիչը: Տաք է, տաքացել է շփվելուց: Հանկարծ ծխում են տաշեղները, կրակ է բռնկվում:

Ահա ձեզ շփմամբ կրակ ստանալու սարք: Այդ միջոցը մինչև վերջերս էլ օգտագործվում էր մի շարք ցեղերի մեջ:

Սակայն մի բան է դիտելը, մեկ այլ բան՝ դիտածից հետևություն անելը: Հայտնագործություններ կատարել են նրանք, ովքեր բնության հետ ստեղծագործական փոխըմբռնման մեջ են եղել:

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵԶՕՂԼՅԱՆԻ

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ




Այն ի՞նչն է, որ գիշեր-ցերեկ
Գնում է, գնում,
Բայց երբ էլ որ նրանց փնտրեք,
Կգտնեք տեղում:

(Գետը)

Ճաշին փոքրիկ մանուկ է,
Երեկոյան՝ հսկա,
Անբաժան է քեզանից,
Ուր որ գնաս՝ կգա:

(Քո ստվերը)

Ի՞նչ կամուրջ է գույնզգույն,
Միայն հեռվից ենք տեսնում
Եվ ոչ նրա վրայով,
Ոչ էլ տակով ենք անցնում:

(Ծիածան)

Նա ոչ մի մարդու
Չի վիրավորում,
Բոլորը նրան
Թակում են, հրում:

(Դուռ)

Երկար-երկար հասակով մեկ,
Պառկած է նա գիշեր-ցերեկ.
Թվում է, թե գործ չի անում,
Բայց բեռներ է բերում-տանում:

(Ճանապարհ)

## ԺԱՄԱՆՑ



Հարցերի պատասխանները լրացվում են սկսած գծիկով նշված վանդակից, ժամացույցի սլաքի շարժման ուղղությամբ:

1. Սովետական մարդատար տիեզերանավ: 2. Երկրի արբանյակը: 3. Պայծառ աստղ Մեծ արջի համաստեղությունում: 4. Խոշոր աստղ: 5. Սատուրնի արբանյակներից: 6. Չեխ տիեզերագնաց-օդաչու: 7. Մարսի արբանյակներից: 8. Մոլորակ: 9. ՍՍՀՄ տիեզերագնաց-օդաչու: 10. Պայծառ աստղ Եզնարածի համաստեղությունում: 11. Համաստեղություն: 12. Ամերիկացի տիեզերագնաց-օդաչու, որն առաջին անգամ վայրէջք կատարեց Լուսնի վրա: 13. ՍՍՀՄ տիեզերագնաց-օդաչու («Սոյուզ—15»): 14. Սովետական արհեստական արբանյակ: 15. Պայծառ աստղ Երկվորյակների համաստեղությունում: 16. Համաստեղություն:

Կազմեց ՎԱՆԻԿ ԱԼԵՔՍԱՆՅԱՆԸ





**Մատ՝ երկու քայլից**

ՄՀԵՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Երևան, № 106 դպրոց, 10-րդ դաս.

**Լուծման տարբերակներ**

ա) 1. Աd7 Ձի ~ 2. Թe6x
բ) 1. Աd7 Աd5 2. Թd4x
գ) 1. Աd7 d5 2. Թf4x
դ) 1. Աd7 f5 2. Թd4x

ա) 1. Փa4 Ա:a4 2. Թ:a6x
բ) 1. Փa4 Աb6 2. Թd8x
գ) 1. Փa4 Փ ~ 2. Թb5x



ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции 375015, Ереван-15, ул. Кармир банаки № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 6 • 88



Հանձնված է արտադրության 22.04.88 թ.: Ստորագրված է տպագրության 08.06.88 թ.: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 65432: Պատվեր՝ 780: Գինը՝ 15 կոպ.:

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:

Сдано в набор 22.04.88 г. Подписано к печати 08.06.88 г. Формат 70×100 1/16. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 65432. Заказ 780. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.



ԱՐՇԻԼ ԳՈՐԿԻ (ՈՍՏԱՆԻԿ ԱԴՈՅԱՆ), (1904—1948), «ԾԱՂԻԿՆԵՐ. ՋՐԱՂԱՑԻ ՋՐԵՐԸ», 1944 Թ.

ՋՐԵՐԸ», 1944 Թ

Գլխավոր խմբագիր՝ **ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈԼՅԱՆ Լ., ՇԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵՉ-ՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր)։

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԳԵՎՈՐԳՅԱՆ Գ.։

ԻՆԴԵՔՍ՝ 77806 ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.